# Ծաղկաձորում

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ջովաշունչ գրկում անտառների,
Ուր ծաղիկներն են անուշ բուրում,
Թնդում է երգը պիոներների
Ու տարածվում է Ծաղկաձորում:

Ծփում են ճերմակ վրաններր
Եվ խարույկներն են ուրախ վառվում,
Առույգ, ժպտադեմ մանուկները
Երջանկությամբ են թևավորվում:

Այդ Հայրենիքն է սովետական
Փայփայում նրանց անճուն սիրով,
Չքնաղ այսօրը և ապագան
Զարդարում շքեղ ծաղիկներով:

Այդպես են ուզում նաև նրանք,
Պատանիները ողջ աշխարհի,
Որ երգեն խաղաղ ու անվտանգ,
Ինչպես լանջերին Ծաղկաձորի,

Որ կորեացին լինի ազատ
Եվ բոլոր մարդիկ ողջ աշխարհում,
Որ երգեն երգերը հարազատ,
Ինչպես մեզ մոտ է՝ Ծաղկաձորում:






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 8

ՕԳՈՍՏՈՍ

1951 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*ՈՒՐԱԽ Է ԱՆՑՆՈՒՄ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՄԱՌԸ...*

Նկարում՝ Երեխաները Երևանի մանկական երկաթուղում.

# ՀԱՄԱՐՁԱԿՆԵՐԸ

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Անցյալ տարի Հայաստանի պետական հրատարակչությունը մանկա-պատանեկական գրքերի մրցանակաբաշխություն հայտարարեց։ Մրցանակ ստացավ նաև Յուրի Մարյանի «Ես, պատանի պիոներս» վիպակը։ Վիպակում պատմվում է այն մասին, թե ինչպես երրորդ դասարանի աշակերտները պատրաստվում և ընդունվում են պիոներական կազմակերպության շարքերը։

Այդ գործում նրանց օգնում են բարձր դասարանի աշակերտ ընկեր Վազգենը, ուսուցչուհի Ասյա Աբրամովնան և ուրիշները։

Մեր ամսագրի այս համարում տպագրում ենք մի գլուխ «Ես, պատանի պիոներս» վիպակից։

*Ահա թե ինչից սկսվեց։ Դասամիջոցին Սուրիկն ասաց, թե քաղաքից ոչ հեռու, Զանգու գետի ափին հիդրոկայան է կառուցվում։ Նա եղել է այնտեղ և շատ հետաքրքիր բաներ է տեսել։*

*— Եկեք այսօր բոլորս միասին գնանք,— առաջարկեց նա.— դա բոլորովին էլ հեռու չէ։ Սարի միջի թունելը որ անցնենք, շատ-շատ երկու քայլ մնա։*

*Վահիկն առաջարկեց ընկեր Վազգենին ասել դրա մասին. բայց ընկեր Վազգենին չգտան ու որոշեցին առանց նրան գնալ։*

*Սուրիկը ճիշտ էր ասել՝ շինարարությունը շատ հետաքրքիր էր։ Ջրանցքը փորում էին ոչ թե մարդիկ, այլ երեք հսկա մեքենաներ՝ էքսկավատորները։ Ամեն մի էքսկավատորը երկար կնճիթ ուներ, իսկ կնճիթի ծայրին՝ բահի նման մեծ աման՝ մեծ-մեծ ատամներով։ Էքսկավատորն իր կնճիթը դարձնում էր ջրանցքի կողմը, ցած էր գցում ամանը և ատամները խրվում էին հողի մեջ։ Հետո պողպատե պարաններով քաշում էր ամանը, ամանն էլ բարձրացնում էր հողը։ Ինչքա՜ն շատ էլ հող էր վերցնում՝ ամբողջ մի տուն։ Հետո էքսկավատորը կնճիթը դարձնում էր խճուղու կողմը, ուր մոտենում էր դատարկ բեռնատար ավտոմեքենան և հողը թափվում էր թափքի մեջ։*

*Տղաները երկար ժամանակ մեծ հետաքրքրությամբ դիտում էին, թե ինչպես են աշխատում էքսկավատորները։*

*Ինչքա՜ն շատ մարդիկ հարկավոր կլինեն նրա փոխարեն ու ինչքան երկար պետք է աշխատեին նրանք...*

*Տղաներն առաջ գնացին։ Այնտեղ, ուր ջրանցքի արդեն պատրաստի մասն էր վերջանում, հողի մեջ էր մտնում երկաթե մի վիթխարի խողովակ։ Խողովակն այնքան լայն էր, որ նույնիսկ ամենաբարձր հասակ ունեցող Սուրիկը կարող էր հանգիստ կանգնել նրա մեջ և ձեռքերը հազիվ թե հասնեին մյուս կողին։ Խողովակը մի փոքր թեքությամբ իջնում էր ցած։ Հեռվում, ինչ-որ մի տեղ փոքրիկ լույս էր երևում։*



*— Պա՛հ, ինչքա՜ն երկար է,— բացագանչեց Գագիկը։*

*— Եկեք խողովակի միջով իջնենք մինչև մյուս ծայրը,— առաջարկեց Սուրիկը։*

*Բայց ոչ ոք չհամաձայնվեց։ Սարսափելի է մթան միջով առաջ գնալը, և հետո վերջն էլ չի երևում. ո՞վ գիտի՝ ինչ երկարություն ունի։*

Վահիկն ասաց.

— Մտնես, կեսին հասնես ու հենց այդ ժամանակ էլ ջուրը բաց թողնեն, հետո՞...

— Ինչ է, վախեցա՞ր,— չարաճճիորեն ասաց Սուրիկը։

— Բոլորովին էլ չվախեցա,— արդարացավ Վահիկը,— ուղղակի՝ կարիք չկա խողովակի մեջ մտնելու։

— Այդպես է էլի։ Խոսելու ժամանակ առաջինն ես, իսկ գործի ժամանակ՝ վախենում ես։

— Ճիշտ չէ,— տաքացավ Վահիկը.— քաջությունը հո խողովակի մեջ մտնելը չէ...

Տղաները միջամտեցին ու նրանց հաշտեցրին։ Ոչ ոք խողովակի մեջ մտնել չէր ուզում. Սուրիկին էլ համոզում էին, որ չմտնի, բայց Սուրիկը ոչ ոքի չէր լսում։

— Ասածը՝ արած է,— ասաց նա, մոտեցավ խողովակի եզրին ու ձեռքով հրաժեշտ տալով սկսեց դանդաղ իջնել։ Տղաները որոշ ժամանակ հետևում էին նրան, բայց հետո նա այլևս չերևաց. միայն քայլերի ձայնն էր լսվում։

— Եկեք իջնենք ու ներքևում դիմավորենք նրան,— ասաց Գագիկը։

Այգիների միջով գալարվող նեղ արահետով տղաները իրար ետևից իջան ցած։ Խողովակի ներքևի ծայրին հասան թե չէ, այնտեղից դուրս վազեց Սուրիկը։ Նա շատ գունատ էր, վախեցած աչքերով, իսկ հագուստը ամբողջովին փոշոտ էր ու տեղ-տեղ էլ նույնիսկ ժանգով ծածկված։ Թևքն էլ մի քիչ պատռված էր։

— Ի՞նչ պատահեց,— ցավակցելով ու մի քիչ վախեցած հարցրեց Միհրանը։

— Ո՜... ո՜... չինչ,— կակազելով պատասխանեց Սուրիկը և ուզեց ժպտալ, բայց դա ոչ թե ժպիտ, այլ ծամածռություն ստացվեց։

Սուրիկը կամաց-կամաց հանգստացավ։ Տղաները նրան օգնեցին՝ շորերը թափ տալ։ Նա առվում մի լավ լվացվեց։

— Ի՞նչ է պատահել, ախր,— այժմ արդեն հարցրեց Արմենը։

— Այնտեղ օձ կար։ Ուղղակի ոտքերիս տակից դուրս պրծավ ու հարձակվեց ինձ վրա. հազիվ փախա։

— Օ՞ձ,— տարակուսանքով հարցրեց Ռուբիկը.— չի կարող պատահել։ Ես շատ լավ գիտեմ, որ այստեղ օձ համարյա թե չի լինում։ Լորտու՝ շատ կա։ Երևի լորտու է եղել։

— Ի՞նչ լորտու, է՜,— առարկեց Սուրիկը,— իսկական օձ։ Ա՛յ, իմ թևի նման հաստ։ Այսքա՜ն երկար ու բաց կանաչ գույնի...

— Դե, իհարկե լորտու է եղել,— բացագանչեց Ռուբիկը և քահ-քահ ծիծաղեց։

Ծիծաղեցին նաև մյուսները։ Սուրիկը մի քիչ շփոթվեց, բայց այնպես ցույց տվեց, թե իբր Ռուբիկը ճիշտ չէ և որ դա իսկապես օձ է եղել։

Տուն վերադառնալիս նրանք խոսում էին Սուրիկի արարքի մասին։ Վիճում էին, տաքանում, բայց այդպես էլ մի վերջնական խոսքի գալ չկարողացան։ Որոշեցին հարցնել Ասյա Աբրամովնային։

Մյուս օրը տղաներն ամեն ինչ պատմեցին Ասյա Աբրամովնային։ Նա լսեց նրանց և ասաց.

— Նախ և առաջ դուք առանց մեծերի իզուր եք քաղաքից դուրս գնացել. հարկավոր չէ այդպիսի բան անել։ Երկրորդ՝ եկեք քննենք, թե ինչ է համարձակությունը և ինչ է վախկոտությունը։

— Էլ ինչ քննենք,— առարկեց Արմենը,— բոլորի համար էլ պարզ է, որ Սուրիկը շատ համարձակն է։

— Ամենևին էլ պարզ չէ,— մեջ մտավ Վահիկը,— դա համարձակություն չէ։

Զանգը հնչեց։ Դասամիջոցին Սուրիկը հպարտ-հպարտ ման էր գալիս դասարանում։ Ճիշտ է, նա շատ էլ համոզված չէր, թե Ասյա Աբրամովնան իրեն կգովի, բայց չէ՞ որ հիմա բոլորը միմիայն իր մասին են խոսում։ Սա նրան ուրախացնում էր։

Եկավ Ասյա Աբրամովնան։ Դասամիջոցին բոլորը գոռգոռում էին ու վիճում, իսկ հիմա սպասում էին, թե Ասյա Աբրամովնան ինչ կասի։

— Սուրիկն, իհարկե, համարձակ տղա է,— ասաց Ասյա Աբրամովնան։

Սուրիկը հաղթական նայեց Վահիկին, որը տարակուսանքի մեջ էր և գլուխը կախ, նստարանին մատիտով ինչ-որ բան էր գծում։

— ... Բայց բանն այն է, որ երեկ Սուրիկը ճիշտ չի վարվել։

Այժմ էլ արդեն Սուրիկն էր ստիպված զարմացած նայել Ասյա Աբրամովնային, իսկ Վահիկն անմիջապես գլուխը բարձրացրեց և սպասում էր, թե ի՞նչ կասի նա հետո։

— Իհարկե, ջուրը խողովակ լցվել չէր կարող։ Չէ՞ որ դուք ինքներդ եք տեսել, որ էքսկավատորները դեռ վերևում են ջրանցք փորում։ Ինչպե՞ս կարող էր ջուր գալ։

Վերջին նստարանին նստած ինչ-որ մեկը փռթկացրեց։ Հանկարծ Սուրիկն զգաց, որ իրեն հերոսական թվացող այդ արարքը տղաների աչքին միանգամից խամրեց։ Նա կամացուկ հարցրեց.

— Ուրեմն ես բոլորովին համարձակ չե՞մ։

— Ո՛չ,—առարկեց Ասյա Աբրամովնան, —դու, ինչպես և բոլոր տղաները, այդ րոպեին մոռացել էիք այդ։ Ուրեմն դու համարձակ կերպով մտար խողովակի մեջ, մտածելով, որ ջուրը համենայն դեպս կարող է գալ։ Միայն թե՝ հարկավո՞ր էր այդ անել, թե՞ ոչ։ Իհարկե՝ ոչ։ Համարձակությունը շատ լավ բան է, բայց եթե իսկապես ջուրը լցվեր խողովակ, դու կզոհվեիր և քո համարձակությունից՝ ոչ ոքի ոչ մի օգուտ։ Հիշո՞ւմ եք՝ մենք խոսել ենք Ալեքսանդր Մատրոսովի մասին։ Նա շատ համարձակն էր։ Երբ նա սողում էր դեպի գերմանական դոտը, գիտեր, որ պետք է մեռնի. բայց Մատրոսովն իր խիզախությամբ օգնում էր մնացած մարտիկներին առաջ շարժվել ու թշնամուն հաղթել։ Սա բոլորովին ուրիշ բան է։

— Հենց ես էլ այդ եմ ասում,— լսվեց Վահիկի աշխույժ ձայնը,— ես բոլորովին էլ չեմ ասում, թե Սուրիկը համարձակ չէ։ Միայն թե խողովակի մեջ մտնելու ի՞նչ կարիք կար։

— Ճիշտ է,—ասաց Ասյա Աբրամովնան. —բայց չեմ հասկանում, թե ինչո՞ւ դուք միայն Սուրիկի համարձակության մասին եք խոսում։ Մի՞թե միայն նա է ձեր մեջ քաջը։ Իսկ եթե հարկ լիներ այդ խողովակի մեջ մտնել ինչ-որ շատ կարևոր և պետքական բանի համար, ուրիշ ոչ ոք չէ՞ր մտնի։

— Ես կմտնեի,— գոչեց Արմենը։

— Ես էլ,—լսվեց Գագիկի ձայնը։

— Ճիշտ է,—ասաց Ասյա Աբրամովնան, — և՛ դու կմտնեիր, և՛ Վահիկը կմտներ, և՛ Միհրանը և բոլոր մյուսները։

— Իսկ ա՛յ, Աշոտը չէր մտնի,— ծիծաղելով ասաց Սուրիկը.— Նա նույնիսկ վախենում է մութ ժամանակ դուրսը մնալ։

— Նշանակում է Աշոտը վատ ընկերներ ունի,—խստորեն ասաց Ասյա Աբրամովնան, —երբ որ նրանք չեն օգնում նրան խիզախություն դաստիարակել իր մեջ։

— Ունի՞, որ դաստիարակենք,— չէր զսպվում Սուրիկը։

— Ունի՛։

Աշոտը, որ Սուրիկի խոսքից քիչ էր մնում լաց լիներ, պաղատագին նայում էր Ասյա Աբրամովնային։ Նա զգում էր, որ տղաներից օգնություն սպասելն իզուր է։ Այդ ժամանակ խոսեց Վահիկը։

— Ա՛յ, ես գիտեմ, որ բոլոր ֆիզկուլտուրնիկները շատ համարձակն են։ Դա ինձ Կարոն է ասել. նա ինքը շատ ուժեղ է ու շատ էլ համարձակ։

— Դե, իհարկե,— պաշտպանեց Արմենը.— Ֆիզկուլտուրայի մասին միշտ էլ խոսում ենք, բայց ոչինչ չենք անում։ Թող մեզ



մոտ էլ ֆիզկուլտ խմբակ լինի, իսկ Կարոն թող մեզ հետ պարապի...

— Այո՛, այո՛,— բացագանչեց Սուրիկը,— ես նրան կասեմ...

— Ես ինքս կարող եմ ասել,— ընդհատեց Վահիկը։

— Ավելի լավ կլինի մի քանի պատգամավոր ընտրենք և ուղարկենք Կարո Աղոնցի մոտ,— հանգստացրեց Ասյա Աբրամովնան։— Նրանք կխնդրեն նրան՝ պարապել։ Ֆիզկուլտուրայի պարապմունքները կօգնեն ձեզ համարձակություն դաստիարակել ձեր մեջ։

Հենց այդտեղ էլ պատգամավորներ ընտրեցին։ Երբ տղաները ցրվում էին, Արմենն ասաց.

— Ես էլ այնքան, այնքան մե՜ծ մկաններ կունենամ, ինչպես որ մեր բռնցքամարտիկները... Ես էլ շատ խիզախ կլինեմ...

Իսկ Սուրիկն ավելացրեց.

— Լորտուից չես վախենա ու օձի հետ էլ չես շփոթի...

# ՆԱՄԱԿ ՃԱՄԲԱՐԻՑ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Լուսանկ. Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Նստած գետափին
Խնձորենու տակ,
Քեզ, անուշ մայրիկ,
Գրում եմ նամակ։

Արևն է խաղում
Իմ դեմքի վրա,
Թվում է՝ դու ես
Ժպտում ինձ նիմա։

Ժամանակը իմ
Ուրախ է անցնում...
Այնքա՜ն ընկերներ
Ունեմ ճամբարում...

Խաղում ենք այստեղ,
Վառում ենք խարույկ,
Խարույկի շուրջը
Երգում ենք առույգ։

Հավաքել ենք շատ
Միջատ ու բզեզ,
Թիթեռներ նախշուն,
Ծաղիկներ պես-պես։

Մայրի՛կ, խնամիր
Իմ կանաչ տնկին,
Մինչև ճամբարից
Տուն գամ ես կրկին։

Գնե՞լ ես արդյոք
Դասագրքերը,
Չէ՞ որ կսկսվեն
Շուտով դասերը։

Համբուրում եմ քեզ
Սիրելի մայրիկ,
Քո որդի Գառնիկ։



# ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ

(Հատված 4-րդ մասից)

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

## 1. Պատանի բնասերները խորհրդի են նստել

Պատանի բնասերների այդ օրվա նիստը նվիրված էր այն հարցին, թե ինչով կարող են նրանք օգնել կոլխոզին՝ նոր հողեր ձեռք բերելու գործում։ Նրանք նստել էին հորթանոցի առաջ, չոր հարդի կույտի վրա։

— Մենք հողը պետք է ջրի միջոցով գտնենք,— ասաց Արմենը։

— Ջո՞ւր, նորի՞ց ջուր... Քի՞չ ջուր գտանք կոլխոզի համար։

— Մեր գտած ջուրը հազիվ ծխախոտի ցանքին և տնկիներին բավականացնի։

Հարյուր հազար տնկի ենք տնկելու, հինգ այդքան էլ ծառի սերմ պիտի թաղենք հողի մեջ։ Ա՛յ, եթե Գիժ-սարի ջրանցքի ջուրն ավելացնելու հնար լինե՛ր...— ասաց Արմենը։

Բոլորը լուռ մտածում էին։

— Երեխե՛ք,— ասաց Միրուք Աստատուրը,— Սև քարափներից շատ վերև մի հին բերդ կա. հողեր ունի, որ քսան գութանով տաս օր վարեք՝ չի պրծնի։ Գնանք էդ հողերը տեսնենք։

— Առանց ջրելու բերք կտա՞,— հարցրեց Արմենը։

— Հին ժամանակ ցանք են արել այդ տեղերում։ Մինչև հիմի էլ հողերի սահմանները պարզ երևում են...

— Հին ժամանակ ցանել են և նայել երկնքին։ Երկինքն էլ կամ անձրև է ուղարկել, կամ չի ուղարկել։ Կոլխոզը կարո՞ղ է հույս դնել երկնքի վրա։

— Կոլխոզը պլանային տնտեսություն է,— Արմենի միտքը լրացրեց Կամոն,— նա հենց ցանելու ժամանակ պետք է իմանա, թե մոտավորապես ինչքան բերք է վերցնելու... Չէ, պապի՛, եթե անջրդի է, չեն համաձայնվի հերկել։

— Ջուրն էլ քիչ չէ,— դանդաղ ասաց Արմենը։— Ես հաշվել եմ, որ Գիժ-սարի լճից եկող ջրի առնվազն ութսուն տոկոսը կորչում է անտեղի։

— Իսկապես, ջուրը իզուր գնում կորչում է,— գլխի ընկավ Ենոքը։

— Ջրամբար կառուցենք, ջուր հավաքենք ամառվա համար,— առաջարկեց Համիկը։

— Գիժ-սարի գլխին մենք ջրամբար ունենք։ Եթե կարողանանք ամեն տարի օգոստոսից սկսած փակել այն լճի հատակի անցքը, մինչև մյուս տարվա մայիս—հունիս ամիսները հալչող ձյունից այնքան ջուր կամբարվի, որ մեր կոլխոզին լրիվ կբավականացնի։



— Հիանալի գյուղ, կեցցե՛ մեր գիտնականը,— գոչեց Կամոն,— ընկերներ, ուրեմն վճռված է, գնում ենք...

Նա հանկարծ կանգ առավ։

— Իսկ հիդրոկայա՞նը... Նրան ամառ-ձմեռ ջուր է պետք։

Բոլորն էլ մտածում էին՝ ինչպե՞ս անել, որ և՛ ջուր կուտակեն լեռնային լճում, և՛ հիդրոկայանը կանգ չառնի։ Միայն Արմենն էր խաղաղ ու հանգիստ ժպտում։

— Մի՞թե պարզ չէ,— ասաց Արմենն ու նորից լռեց։

— Ի՞նչն է պարզ,— բացագանչեց Կամոն։

— Այն է պարզ, որ մենք լեռնային լճի անցքը կփակենք, իսկ կոլխոզի հիդրոկայանը կշարունակի աշխատել։

— Ինչպե՞ս թե,— գոչեց Կամոն։— Հիդրոկայանն աշխատեցնող ջուրը լեռնային լճից չի՞ գալիս։

— Լճից է գալիս, բայց ոչ բոլորը։ Մի մտածեցեք. «Դժոխքի դուռ» կոչվող քարայրից մի գետակ է դուրս հորդում։ Եթե այդքան ջուրը գետնի տակով լեռնային լճից գար, լճի ջուրը քանի՞ շաբաթ կդիմանար...

— Իսկապես՝ լիճը կցամաքեր...

— Ես հաշվել եմ,— հանդարտ շարունակեց Արմենը,— հաշվել եմ լճի ջրի և քարայրից դուրս եկող ջրի քանակը։ Սարի խորքից ինչ-որ ջրեր միանում են ստորերկրյա գետակին...

— Ուրեմն, եթե լճի հատակի անցքը փակենք, մեր հիդրոկայանի համար էլի՞ ջուր կգա,— անհամբեր հարցրեց Կամոն։

— Կգա՛, համոզված պատասխանեց Արմենը։

— Որ այդպես է, էլ ո՞ւր ենք հանգիստ նստել,— տեղից վեր կենալով ասաց Համիկը։

— Իսկապես, ջուրը մտնելու լավ ժամանակն է, գնանք,— Գիժ-սարի սպիտակած բարձունքներին նայելով ասաց Գրիգորը։— Վանո՛, գնա հորթերին մտիկ արա, ես ու Համիկը գնանք լճի հատակի անցքը իսկույն փակենք գանք...

Միայն Գրիգորի այդ կատակից պատանիները հասկացան, թե ինչ դժվար բան են իրենք ձեռնարկում։ Սարում արդեն ձյուն էր դրել. ո՞վ կսուզվեր լճի հատակը...

Երբ պատանիները գնացին կոլխոզի վարչություն և իրենց այդ միտքը հայտնեցին նախագահ Բագրատին, նա հանգիստ ու զվարթ ասաց.

— Գործն սկսելուց առաջ խորհուրդ կհարցնենք։ Գյուղը հո անտեր չի։ Ի՞նչ մեծ բան է լճի հատակն իջնելը։ Մենք քառասուներեք թվականին Սև ծովի տակից հարյուր տարի առաջ խորտակված մի նավ հանեցինք... Տիգրա՛ն, շոֆերին ասա մի ավտոն գործի գցի։ Կամո՛, մեքենան կնստես կգնաս Ջաղալու։ Այնտեղ գիտնականներ են եկել, Սևանի հատակի հողերն են ուսումնասիրում։ Հետները ջրասույզ կա։ Կգնաս կոլխոզի անունից կխնդրես մի օրով ջրասույզին մեզ տան։

Եվ կոլխոզի վարչության անունից նա մի գրություն գրեց արշավախմբի պետին։ Կամոն գրությունը ձեռքին դուրս թռավ գրասենյակից։

## 2. Արյան լիճը—երջանկության լիճ

Նույն երեկոյան ջրասույզը ներկայացավ կոլխոզի գրասենյակ. իսկ հաջորդ առավոտյան պատանի բնասերների խումբը բարձրանում էր Գիժ-սարի մեծ լեռնամատն ի վեր։

— Պա՛հ, այս ի՜նչ ծիծաղելի հագուստ է...,— ասաց Գրիգորը և հագավ ջրասույզի ռետինե կոմբինեզոնը, գլխին քաշեց սկաֆանդրն ու բերանի անցքը բանալով ասաց.

— Իսկական Գիլլիի վիշապը դարձա... բռ-ռ-ռ-ռ՜...

Ճանապարհին Գրիգորն այնքան կատակներ արավ, որ մեր պատանի բնասերները չիմացան, թե ինչպես հասան լեռան գագաթը։ Նրանց առաջ, իր սպիտակ շրջանակների մեջ կապույտին տվեց լեռնային լիճը։ Մեր ճամփորդները նստոտեցին քարերին հանգստանալու, իսկ Միրուք Ասատուրը լցրեց իր հնամենի ծխամորճն ու սկսեց ծխել։



— Էս լճի անունը ձեզանից ո՞վ գիտի,— հարցրեց նա։

— Անուն ունի՞ որ,— հարցրեց Արմենը։

— Ունի բա՞, նշանավոր անուն ունի։ Սրա անունը Արյան լիճ է։ Հին ժամանակ ինչքա՜ն արյուն է թափվել սրա մոտ…

— Իսկ սրանից հետո մենք կկոչենք… Ի՞նչ կոչենք, Արմեն,— հարցրեց Կամոն։

— Երջանկության լիճ…

— Կեցցե՛ս, իսկական երջանկության լիճ։ Դե, անցնենք գործի։

— Այնպիսի մի պրոպկա խփեմ, որ մի կաթիլ ջուր չգնա,— պարծեցավ Գրիգորը՝ «պրոպկան» վերցնելով։ Դա հորթի ստամոքս էր՝ մեջը հողով լիքը։

Խումբը իջավ լճակի ափը, ուր Կամոն ջրասույզին դիմեց հետևյալ խոսքերով.

— Այսօր դուք մեծ գործ եք կատարում մեր գյուղի համար։ Մենք հողեր ունենք, որ ձեր շնորհիվ բերքատու են դառնալու։ Լճավանի պատանի բնասերների անունից խընդրում եմ լճի հատակի անցքը անպայման փակել, ինչ էլ որ լինի։

— Իսկ անցքը մոտավորապես որտե՞ղ է,— հարցրեց ջրասույզը, և սկսեց հագնել իր ռետինե հագուստը։

— Ա՛յ, այն տեղում, ուր փրփուր կա և ջուրը պտտվում է…

Ջրասույզը շատ քըչախոս և գործնական մարդ էր երևում։ Իր հարմարանքները հագած մտավ ջուրը և առաջ գնաց։ Նրա ետևից քարշ էր գալիս ռետինե մի երկար խողովակ, որի միջով նա շնչելու էր։ Խողովակի ծայրը բռնել էր Կամոն։ Վերջապես մարդը հասնելով լճի կենտրոնը՝ սուզվեց։

— Երանի՜ իրեն, հովացավ…Բայց ձըկները հիմի սրտաճաք կլինեն նրա տեսքից… Այդպիսի այլանդակ բան նրանք իրենց կյանքում չեն տեսել,— նորից կատակեց Գրիգորը։

— Սուս արա, տեսնենք,— սաստեց Կամոն։ Նա իր հայացքը չէր հեռացնում այն տեղից, ուր անհայտացավ ջրասույզը՝ տարօրինակ խցանը թևի տակ։ Կամոն սեղմում էր խողովակի ծայրին հագցրած փոքրիկ մղիչը, որ օդը ներս գնա։

Անցավ մի քանի րոպե, թեև անհամբերներին թվաց, թե ամբողջ մի ժամ անցավ։

Այդ պահին ջուրն ալեկոծվեց։ Ամենի դելֆինի նման մի սև բան երևաց։ Երևաց սկաֆանդրը, ապա ռետինե շորերով մարդը՝ առանց հետը տարած խցանի։

Երբ մարդը իր գլուխը դուրս հանեց սկաֆանդրի միջից, բոլորն էլ տեսան, որ նրա դեմքը փայլում է բավականությունից։

— Ջա՛ն, անցքը փակել է,— գոչեց Ենոքը և գլուխկոնձի տվեց ձյան մեջ։

— Այո, փակեցի… Լա՜վ փակեցի,— ասաց մարդը դժվարությամբ շնչելով։

Պատանիները ռետինե հագուստով մարդուն բարձրացրին իրենց ձեռքերի վրա և երեք անգամ «ուռա» կանչեցին։ Ծեր որսորդը շփում էր իր երկար, սպիտակ մորուքը։ Նա գոհ էր, բայց շուտով մտախոհ դարձավ։

— Ջրամբարն ունենք, իսկ նոր հողե՞րը, հարցրեց նա։

— Սև ժայռերի ներքև ընկած անջրրդի ղռերը կվարենք,—ասաց Կամոն։

— Քիչ է, նրանով վերք չի առողջանա։ Ա՜խ, թե էս ջուրը Բերդի հողերը հասցնելու ճար լիներ...

— Որ մտածենք, դրա հնարն էլ կգտնվի,— մտախոհ ասաց Արմենը։

Երեկոյան դեմ, երբ խումբը իջնում էր սարից, կանգ առավ Սև ժայռերի գլխին։

— Տղանե՛ր, ջրվեժը մնում է, ու-ռա՜... Հիդրոկայանը շարունակում է աշխատել,— փոչեց Կամոն։

— Բայց ջուրը կիսով չափ պակասել է,— ասաց Արմենը։

— Ուրեմն մի Արյան լիճ էլ սարի ներսում կա, թե չէ այսքան ջուրը որտեղի՞ց է գալիս,— ասաց Գրիգորը։ — Եկեք գտնենք...

— Այո, պետք է գտնել այդ ստորերկրյա լիճը մի շատ կարևոր բանի համար... Մեր առաջ մի նոր և ավելի կարևոր հարց է ծառանում,— հանդարտ, կարծես ինքն իրեն ասաց Արմենը և ցած իջավ Սև ժայռերից։

Տղաներն իրար երեսի նայեցին. տեսնես չէի ի՞նչ է մտածում «գիտնական բալենդ»։



Արմենը չասաց, թե ինքն ինչ է մտածում. ձմեռը լեռներից արդեն ցած էր իջնում և նա գիտեր, որ իր արտասովոր մտադրությունը իրագործելու փորձ կարելի է անել մայիս ամսից ոչ շուտ։



ԱՄԱՌԸ ԳՅՈՒԼԱԳԱՐԱԿՈՒՄ

Նկարում՝ մանկական հանգստի տան վրանները սոճու անտառում։

Լուսանկ. [illegible]




ԳՐԻԳՈՐ ՉԱԼԻԿՅԱՆ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

Առավոտ է արևավառ,
Լի է կյանքով բակը մեր տան,
Կառուցել ենք այստեղ ճամբար,
Մի լավ ճամբար պիոներական:

Մաքրել ենք մենք ամեն անկյուն,
Հրապարակ ենք խմբով հարթել,
Կազմակերպել փոքրիկ ակումբ,
Ավազանը ջրով լցրել:

Ամեն անգամ մեր այս բակում,
Երբ դրոշն է բարձրանում վեր,
Իսկույն ջոկատն է հավաքվում,
Սկսվում են խաղերը մեր:

Բասկետբոլ ենք մի տեղ խաղում,
Մի տեղ շախմատ կամ վոլեյբոլ,
Նվագի տակ աշխույժ պարում,
Մի ուրիշ տեղ երգում խմբով:

Իսկ երբ օրն է դանդաղ մթնում,
Երբ լույսերն են վառվում բակի,
Մենք խմբովին գիրք ենք կարդում,
Կամ զրույցներ լսում հակիրճ:

Կարկաչում է կյանքը այսպես,
Խաղում ենք մենք ու կատակում,
Օրն անցնում է վայրկյանի պես,
Նորակառույց մեր տան բակում:



## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀՆԱՐԱՄՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

(Զրույց խարույկի շուրջը)

Ամբողջ ճամբարը տոնական տրամադրության մեջ էր: Պիոներները լսել էին, որ իրենց մոտ է եկել Սովետական Միության Հերոս, գվարդիայի մայոր Ավետիսյանը: Եվ ահա խարույկի մոտ եռևացին ճամբարի պետ ընկեր Մարտիկյանն ու մայոր Ավետիսյանը:

Երբ բոլորը լռեցին, գվարդիայի մայորն ասաց.

— Ընկեր պիոներնե՛ր, ես ձեզ իմ կյանքից մի դեպք կպատմեմ:

Ռազմաճակատում ես սնայպեր էի:

Գարնանային մի օր, վաղ առավոտյան, երբ թանձր մառախուղը ծածկել էր լեռ-

ների ու անտառների վրա ու լցրել ձորերը, ես ու Կոլյա Չերեպանովը շարժվեցինք թըշնամու առաջավոր դիրքերի դեմ գտնվող ծմակը՝ «որսի»... Մինչև մառախուղի ցրվելն անհրաժեշտ էր վերջացնել «որսորդության» նախապատրաստությունը: Ես մի ճյուղ կըտրեցի և սկսեցի շտապ կերպով խրտվիլակ պատրաստել: Ես այդ գործում վարպետ էի: Փոքր ժամանակ, մեր կոլխոզի պտղատու ծառերը և ցանքը պաշտպանելու համար, ես շատ էի խրտվիլակներ պատրաստել:

Անփորձ, առաջին անգամ ինձ հետ եկող ընկերս դիտելով իմ անհասկանալի աշխատանքը, ջղայնացավ.

— Ընկե՛ր սերժանտ, ի՞նչ ես անում, քանի դեռ մառախուղը չի ցրվել կրակային դիրքեր պատրաստենք:

Ես հանգիստ պատասխանեցի.

— Հենց այս էլ կրակային դիրքի համար է. մեզ ընկեր եմ պատրաստում:

— Ինչպե՞ս թե:

— Շատ պարզ, դու հետո կհասկանաս: Նա բոլորովին աներկյուղ ու հանդուգն ընկեր կլինի,— լուրջ տոնով ավելացրի ես:

Խրտվիլակը «բարձրանալով» հաստաբուն ծառի վրա՝ կրակային դիրք գրավեց: Մեր «երրորդ ընկերոջը» ուզած դեպքում շարժում ու կենդանի ցույց տալու համար, թևից մի թել կապեցի: Թելի ծայրն իմ ձեռքում, նրանից մի քիչ հեռու, դարան մտա: Ընկերոջս առաջարկեցի կրակային դիրք պատրաստել մեզանից 50—60 մետր հեռու, մի բարձրադիր ու մացառոտ տեղում: Այդ տեղն իշխում էր հակառակորդի դիրքերի վրա: Ընկերս անփորձ էր:

Ես նրան խորհուրդ տվի.

— Լավ քողարկվիր, Կոլյա՛, ինչպես ասում են՝ յոթն անգամ քողարկվիր, մի անգամ կրակիր: Միշտ մի քանի կրակային դիրք պատրաստիր, որ եթե թշնամու սնայպերների կողմից մի դիրքը հայտնաբերվի, անցնես մյուսը ու թշնամուն շփոթության մեջ գցես:

Կաթնագույն մառախուղը հալվեց օդի մեջ: Օրը «որսորդության» համար չափազանց նպաստավոր էր:

Քիչ անց ես խրտվիլակի թելը քաշեցի: Խրտվիլակը մի շարժում կատարեց ծառի հաստ բնի ետևում ու նորից թաքնվեց, դուրս թողնելով իր մարմնի մի մասը, որը կարող էր նկատել թշնամու սնայպերը: Հակառակորդի կողմից ոչ մի կրակոց չըլսվեց: «Ուրեմն թշնամին չնկատեց» մտածեցի ես: Նորից կրակեցի ու թելը քաշեցի:

Այս անգամ լսվեց մի կրակոց: Մեր «երրորդ ընկերը» վիրավորվեց, «կամ ավելի շուտ սպանվեց» և ընկավ ծառից: Ֆաշիստ սնայպերը այդ նկատեց ու գլուխը բարձրացրեց: Նույն րոպեին ես լսեցի մի երկրորդ կրակոց և տեսա, որ մեր դիմաց, բարձունքի վրա, ֆաշիստական սնայպերը ամբողջ հասակով մեկ բարձրացավ ու գետին ընկավ: Կոլյայի գնդակը խոցեց նրան: Նույն ձևով ես և Կոլյան յոթ ֆաշիստ սպանեցինք:

Սակայն թշնամուն միշտ խրտվիլակով չես խաբի: Երևի նա արդեն հասկացել էր մեր խաղը: «Երրորդ ընկերն» այլևս չէր օգնում: Հարկավոր էր մի ուրիշ հնարք մտածել:

Մի անգամ աստղալից գիշերով ճամփա ընկա՝ թշնամու հաղորդակցության ուղիների վրա հսկող մոտակա քարափում կրակային հարմար դիրք գրավելու: Այս անգամ թըշնամուն խաբելու համար մի նոր միջոց էի մտածել: Այստեղ թփուտներ կային: Ես երկու կրակային դիրք պատրաստեցի թը-



փուտներից 20—25 մետր հեռու՝ փարփա-
ռուտներում։ Թելով օղակեցի թփուտներից մեկի բնարմատը և դրա արանքով հրացանի փողի նման մի փայտի կտոր դուրս հանեցի։

Լուսացավ։ Արևը ողողեց բարձունքը։ Իմ թաքստոցից կամաց քաշեցի թելը։ Թուփը շարժվեց։ Ես ուշադիր հետևեցի թշնամու սնայպերին, բայց ոչինչ չնկատեցի։ Երկրորդ անգամ քաշեցի թելը։ Եվ ահա ուղիղ թփին հասավ թշնամու սնայպերի երկու գնդակը։ Նրա ետևում թաքնված սնայպերը «սպանվեց»։ Թուփն անշարժացավ։ Բայց ես արդեն գտել էի թշնամու սնայպերին։ Այժմ անհրաժեշտ էր վերացնել նրան։

Արդեն մի ժամ էր անցել նրա կրակոցից, բայց նա տեղից չէր շարժվում։ Խորամանկ ու փորձառու աղվեսը երևի կասկածում էր, որ իր գնդակը վրիպել է և սպասում լինելու համար, ուզում էր երկար դիտել, արդյոք նորից թփուտը կշարժվի՞։

Սնայպեր դառնալու համար հարկավոր է ոչ միայն հնարամիտ ու խորամանկ լինել, այլև համբերատար, սառնարյուն։ Զորս ժամ ես համբերեցի, մինչև թշնամու սնայպերը համոզվեց, որ թուփն անշարժ է։ Այդ ժամանակ նա բարձրացրեց իր գլուխը և իմ դիպուկ գնդակը վերջ տվեց նրա կյանքին։

Օրերն անցնում էին։ Իմ մարտական հաշվում արդեն գրված էր ոչնչացված 41 հիտլերական, մեծ մասամբ սնայպերներ...

Այսպես, ընկեր պիոներնե՛ր, ոչ միայն սնայպերական գործում, այլև հետախուզության մեջ ու մարտում միշտ պետք է լինել խիզախ, ճանդուգն և հնարամիտ։

Գվարդիայի մայորը վերջացրեց իր զրույցը։ Քիչ հետո հնչեց պիոներական շեփորը և ճամբարում խաղաղություն տիրեց։

*ՍԱՐՄԵՆ*

# ԽԱՐՈՒՅԿԸ

Երեկո է, զով երեկո,
Մեծ խարույկն է բոցկլտում,
Մեր մանկական խմբի երգով
Զվարթ ճանդեսն է բացվում։

Երգից հետո լույսերի տակ
Լուռ կանգնում է մի տղա,
Շուրջը նայում և համարձակ
Արտասանում է ահա.

«Մեր կենդանու, մեր սրտակից,
Մեր հարազատ Ստալին,
Եկել եմ ես այն աշխարհից,
Ուր ձմեռ է ողջ տարին։

Մենք այն հողում օտար էինք,
Հալածված էր մեր լեզուն,
Չունեինք հող ու հայրենիք,
Անտուն էինք, անուսում։

Հիմա ծաղկած Նոր Զեյթունում՝
Քանաքեռի բարձունքին,
Հայրս մեր նոր տունն է շինում,
Տնկում է մեր նոր այգին։

Դո՛ւ ես բերել մեր աշխարհին
Գարուն, արև ու ծաղիկ,
Դու ես տվել մանուկներին
Այս խարույկը գեղեցիկ»։

Հետո պարում են, թռվռում
Ցոթ մանուկներ լուսերես,
Այնքա՜ն լավն են, այնքա՜ն սիրուն,
Թիթեռնիկներ են կարծես...

Նայիր ժպտուն այս աչքերին,
Լույս է չորս կողմ, խնդություն,
Շողքն է զարկել մեր սարերին
Մեր խարույկը բոցկլտուն։

Ուզում եմ, որ երբեք, երբեք
Մեր խարույկը չմարի,
Նրա շուրջը պարենք, երգենք,
Իսկ նա շողա խնդալի։

Իմ ողջ կյանքիս ճանապարհին
Չեմ մոռանա ես հավետ
Մեր խարույկը, մեր ճամբարը,
Մեր սարերը ծաղկավետ...




# ՄԻԼԻՈՆԱՏԵՐ ՕԴԱՉՈՒՆ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ի՞նչ է նշանակում միլիոնատեր օդաչու։ Միլիոնատեր կոլխոզներ շատ կան. դուք նրանց մասին արդեն լսել եք։ Դրանք մեկ և միքանի միլիոնի հարստություն ունեցող կոլխոզներ են։ Այդ հարստության տերերը սովետական ունևոր և երջանիկ կոլխոզնիկներն են։ Դուք լսել եք նաև, որ կապիտալիստական երկրներում կան մի բուռ հարուստներ՝ շահագործողներ, որոնք աշխատավորության հաշվին միլիոններ են կուտակել և նույնպես կոչվում են միլիոնատերեր։ Սովետական օդաչու Հարություն Պարոնյանի միլիոնը ուրիշ է և նա երբեք չի փոխի այդ միլիոնը ոչ մի հարստության հետ։ Այդ նրա հերոսական պատմությունն է, նրա մարտական և խաղաղ թռիչքների պատմությունը։

Եկեք ծանոթանանք օդաչու Հարություն Պարոնյանի միլիոնի հետ։

## 1. Երազող պատանին

— Օդանա՛վ, օդանա՛վ,— ձայն էին տալիս երեխաները և վազում փողոցով։ Ձայնի վրա տներից դուրս էին թռչում երեխաների նորանոր խմբեր և նայում երկինքին։ Կանգ էին առնում նաև մեծահասակ





անցորդները և ձեռքերը ճակատներին դրած երկնքի կապույտների մեջ որոնում թռչող ինքնաթիռը, որը հազիվ ծտի չափ էր երևում։

Դա մոտ 25 տարի առաջ էր, երբ ինքնաթիռը դեռ հազվագյուտ բան էր, մեծի ու փոքրի զարմանքն էր առաջացնում։

Փողոցով վազող երեխաների մեջ էր նաև տասնամյա Հարութիկը։ Նա դեռ երեկ էր վերադարձել Ծաղկաձորի պիոներական ճամբարից, որն այդ տարի նոր էր բացվել։ Հարութիկն առաջին անգամ էր ինքնաթիռ տեսնում։ Ինքնաթիռը նրա վրա ցնցող տպավորություն թողեց։ Նա հենց այդտեղ էլ որոշեց օդաչու դառնալ։ Ավելի ճիշտ օդում թռչելու բուռն ցանկություն ունեցավ, ինչպես երկնքում սավառնող իրեն անծանոթ խիզախը։

Հարությունը երկար ժամանակ չէր հեռանում փողոցից։ Իր սև, երազուն աչքերը երկնքին հառած, նա մնաց մայթի վրա կանգնած, մինչև ինքնաթիռը անհայտացավ կապույտ երկնքում, ինչպես քարը ծովի մեջ։

— Հարո՛ւթ, գնա՛նք, էլ բան չի երևում,— ձայն տվեցին նրան մոտեցող ընկերները։

Հարութիկը կարծես չլսեց ընկերներին։ Նա հազիվ լսելի շշնջաց.

— Ես էլ այդպես պիտի թռչեմ։



Ընկերների ընդհանուր ծիծաղից նա սթափվեց։ Նայելով նրանց ծաղրական դեմքերին, բռունցքները սեղմելով վճռական ասաց.

— Չե՞ք հավատում, ա՜յ կտեսնեք։

## 2. Միլիոնի սկիզբը

Անցան տարիներ։ Հարությունը դարձավ կոմերիտական։ Երևանում բացվեց պլանեբիստական դպրոց։ Կոմերիտական Հարություն Պարոնյանը միշտ հավատարիմ օդ բարձրանալու իր վաղեմի որոշմանը, մտավ այդ դպրոցում սովորելու և դարձավ պլաներիստ։ Քիչ է ասել՝ պլաներիստ։ Նա դարձավ նշանավոր պլաներիստ և Հայաստանի կողմից 1932 թվականին մասնակցեց պլաներիստների Համամիութենական հավաքին։

Կատարվեցին Հարությունի տարիների երազները։ Նա արդեն կարող էր սավառնել երկնքի կապույտում, բարձրանալ վե՜ր, վե՜ր... Բայց պլաները չէր բավարարում նրան։ Հարությունն ուզում էր լրիվ տիրապետել երկնքի անհաս հեռուներին. նա ցանկանում էր թռչել ավելի վեր. նա ուզում էր թռչել հեռո՜ւ, հեռո՜ւ։ Նա երազում էր օդաչու դառնալ, ղեկավարել իսկական օդանավ... Եվ ինչի՞ հնարավոր չէ հասնել մեր ազանչելի Հայրենիքում։ Եթե դու ունես ցանկություն և կամք՝ կհասնես ամեն ինչի. բոլոր ճանապարհները քո առաջ բաց են, բոլոր հնարավորությունները տվել է քեզ մեր հարազատ Հայրենիքը։ Եվ ահա Հարությունն էլ հասավ իր փայփայած նպատակին։

1935 թվականին նա ընդունվեց Երևանի աերոակումբը։ Հենց նույն տարին նա կատարեց իր առաջին թռիչքը ինքնաթիռով։

Նա բարձրացավ օդ։ Անսահման հրճվանքից Հարությունը օդում երգում էր և նրա երգը խառնվում էր ինքնաթիռի հնդյունին։ Նա մի քանի պտույտ կատարեց Երևանի և Արարատյան դաշտավայրի վրա և վերադարձավ աերոդրոմ։ Երկար չտևեց այդ թռիչքը, շատ ճանապարհ չանցավ Հարությունը՝ ընդամենը մի քանի կիլոմետր. բայց հենց այդ մի քանի կիլոմետրն էլ դարձավ միլիոնի սկիզբը։

## 3. Թշնամու թիկունքում

Փոթորկոտ գիշեր էր։ Մերթ բարձրանալով ամպերից վեր և մերթ իջնելով, երկնքի անհուն խավարը ճեղքում էր մի գիշերային ռմբակոծիչ։

Ինքնաթիռը մոտենում էր ռազմաճակատի գծին։ Հեռվում երևում էին հաճախակի երկինք բարձրացող և ասուպի նման մարող հրթիռներն ու լուսածիր գնդակները։ Ինքնաթիռը պետք է կտրեր ճակատային գիծը և անցներ թշնամու թիկունքը։

Օդաչու Հարություն Պարոնյանը առաջին անգամ չէր, որ անցնում էր թշնամու թիկունք։ Նա արդեն երկու հարյուրից ավելի այդպիսի թռիչք էր կատարել և լավ գիտեր, որ ճակատային գծից անցնելն այնքան էլ հեշտ չէ։ Բայց սովետական օդաչուին ոչինչ չէր ահաբեկում։ Նա ինքնաթիռը բարձրացրեց ամպերից վեր և անցավ թշնամու թիկունքը։ Հարություն Պարոնյանն այժմ արդեն թռչում էր թշնամու գրաված տերիտորիայով։ Ներքևում գիշերային խավար է։ Այնտեղ գերմանացիներն են, որոնք տանջում են սովետական մարդկանց՝ ծերունիներին և երեխաներին, ավերում գյուղերն ու քաղաքները, թալանում չքնաղ Ղրիմը։ Բայց այնտեղ ներքևում նաև բարեկամներ կան՝ սովետական անվեհեր պարտիզանները։ Նրանց մոտ է թռչում օդաչու Հարությունը, նրանց համար զինամթերք ու հաց է տանում։ Մի՞թե կարող են խավարն ու փոթորիկը և թշնամու զենիթային հրանոթները նրան շեղել իր ուղուց։



Հարությունը Պարոնյանը իջնում է ամպերի միջից և ուշադիր դիտում խավարը։ Ահա այնտեղ առկայծում է ձեռքի լապտերը։ Դա հարազատներն են նրան ազդանշան տալիս։ Հարկավոր է իջնել, սակայն գիշերային խավարում դժվար է վայրէջք կատարելը։ Չնայած դրան, Հարություն Պարոնյանը ինքնաթիռը համարձակ տարավ վայրէջքի։ Նույն գիշերն էլ նա վերադարձավ սովետական թիկունք իր հետ բերելով ծանր վիրավորված պարտիզանուհի Վալյային, որն այդ օրը երկու գերմանական գնացք էր անդունդ գլորել և ինքն էլ ծանր վիրավորվել։

Սա Հարություն Պարոնյանի սովորական թռիչքներից մեկն էր։ Խիզախ օդաչուն Հայրենական պատերազմի ժամանակ ութ հարյուրից ավելի մարտական թռիչք կատարեց, դրանցից երեք հարյուր վաթսունը՝ դեպի թշնամու թիկունք։ Չորս մարտական շքանշան է զարդարում անվեհեր օդաչուի կուրծքը։ Այդ շքանշանները նա ստացել է հիտլերյան զավթիչների ջախջախմանն ակտիվ մասնակցելու համար։

## 4. Մոսկվա—Երևան—Մոսկվա

Ստալինյան հնգամյակների ընթացքում մեր Հայրենիքը դարձավ հզոր ավիացիայի երկիր։ Հայրենական պատերազմի տարիներին և պատերազմից հետո սովետական ավիացիան է՛լ ավելի հզորացավ։ Մեծ թափ ստացավ քաղաքացիական ավիացիան։ Հիմա մեր Հայրենիքի բոլոր քաղաքների, շատ շրջկենտրոնների և գյուղերի միջև օդային հաղորդակցություն կա։

Հայրենական պատերազմից հետո օդաչու Հարություն Պարոնյանն իր թռիչքները շարունակեց քաղաքացիական ավիացիայում։ Նա մի տարի իր ինքնաթիռով պայքար էր մղում սոցիալիստական դաշտերի վնասատուների դեմ։ Դրա համար նա ստացավ գերազանց ավիատորի կոչում և կրծքանշան։ 1947 թվից թռչում է Երևան—Մոսկվա—Երևան գծով։ 1948 թվից նա գծային օդանավի հրամանատար է։ Օրական հազարավոր կիլոմետր տարածություն է անցնում Պարոնյանի ինքնաթիռը և երբեք չի խափանվում։ Ամեն ամիս երկու-երեք հազար կիլոգրամ բենզին է խնայում Պարոնյանը։

Անցյալ տարի Պարոնյանն ստացավ միլիոնատեր օդաչուի կոչում և կրծքանշան։ Այդ նշանակում է, որ նա թռել անցել է մեկ միլիոն կիլոմետր ճանապարհ։ Կրծքանշանն ստանալուց հետո նա իր մեկ միլիոնին ավելացրել է և 400.000 կիլոմետր։ Երբ նրա ինքնաթիռը մոտենում է օդանավակայանին, ասում են.

— Միլիոնատերն է գալիս։

Ահա թե ինչպիսին է միլիոնատեր օդաչու Հարություն Պարոնյանը։ Նրա նման հազարավոր օդաչուներ կան մեր Հայրենիքում։







Ֆոտո-ակնարկ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Ստեփանավանից ոչ հեռու, Արջառի անտառում տարածվել է ռեսպուբլիկական անտառային դպրոց-սանատորիան: Ամեն տարի այստեղ են գալիս Հայաստանի հարյուրավոր երեխաներ: Այս գեղատեսիլ վայրում են հանգստանում նաև եղբայրական Վրաստանի շատ պիոներներ...



Վաղ առավոտ է. լռություն: Միայն առվակն է խոխոջում մոտիկ ձորակում ու անտառում հնչում է թռչունների երգը: Արջառի թիկունքից դուրս է գալիս արևը և շողերը ներս գցում ննջարանների լայն լուսամուտներից: Երեխաներն սկսում են անհանգստանալ անկողինների մեջ: Քիչ անց լսվում է շեփորի ձայնը՝ «Վե՛ր կա՛ց...»: Բոլորը վեր են ցատկում տեղերից և ասես իրար հետ մրցելով սկսում են արագ-արագ հագնվել: Շտապում են լիցքի: Ամբողջ դպրոցն սկսում է աղմկել մեղվանոցի պես:

Շուտով հիմնի հնչյունների տակ բարձրանում է դրոշը: Սկսվում է դպրոցի առօրյան...

Հետաքրքիր և ուրախ է անցնում պիոներների ամառն այստեղ: Առավոտից մինչև երեկո եռում է կյանքը սպորտ-հրապարակում, պատանի բնասերների բանջարանոցներում ու տնկարաններում, շրջակա խիտ անտառներում ու ձորերում:

Ահա աղջիկների մի խումբ, ազատ ժամին ծառի զով ստվերում նստած, ասեղնագործում է: Ահա պատանի շախմատիստները բացօթյա ակումբում պայ-







քարում են առաջնության համար։ Ահա և մի խումբ երեխաներ հարմար գահավորակներին կիսապառկած արևի վաննա են ընդունում։ Նկարում դուք տեսնում եք նաև պատանի լուսանկարիչներին...

Հարուստ է պիոներների կյանքն այստեղ։

Օրինակ՝ այսօր պիոներներն անտառ պետք է գնան՝ սունկ հավաքելու և ծաղիկ քաղելու։ Չէ՞ որ նրանք հերբարիումներ պետք է կազմեն դպրոցների բնագիտական կաբինետների համար։ Մի ուրիշ ջոկատ կգնա Ստեփան Շահումյանի տուն-թանգարանը։ Մինչ այդ դպրոցի սաները եղել են «Պուշկինի լեռնանցքում», Լոռու բերդում, Թթու ջուր կոչված աղբյուրի մոտ և քաղաքի աղբյուր-հուշարձանն են դիտել։

Շատ լավ են կազդուրվում երեխաները Ստեփանավանի դպրոց-սանատորիայում։ Մաքուր լեռնային օդը, արևը, լավ սնունդն ու ճիշտ ռեժիմն այնքան են կազդուրել երեխաներին, որ երբ ծնողները նրանց տեսնում են, մի պահ դժվարանում են ճանաչել։

Արթիկից եկած Սվետլանան մի ամսում ավելացել է 3 կիլոգրամ։ Շատ երեխաներ ավելացել են 2—5 կիլոգրամ, իսկ թե որքա՞ն են թարմացել ու աշխուժացել նրանք, երևում է նկարներից։

Եվ այս բոլորը մեր Հայրենիքի մեծ հոգատարության ու խնամքի արդյունքն է։ Դրա համար էլ երեխաներն իրենց ջերմ սերն են արտահայտել, երբ կարմիր կտավի վրա գեղեցիկ ու մեծ տառերով գրել են՝

«Շնորհակալություն Մեծ Ստալինին երջանիկ մանկության համար»։










(Հատվածներ պոեմից)

Գ. ԷՄԻՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*Վերջերս Ստալինյան մրցանակի լաուրեատ, բանաստեղծ Գևորգ Էմինը գրեց ձեզ հայտնի «Շաքե» պոեմի առաջին մասը, որը կոչվում է «Շաքեն Բեյրութում»։ Տպագրում ենք հատվածներ այդ մասից։*

1.

Շաքեն աչքերը լայն բացել
Ու չորս կողմն է նայում քնատ.
Շաքեն վաղուց է արթնացել,
Բայց որտեղի՞ց նա իմանա՝
Լուսացե՞լ է, թե՞ մութն է դեռ:
Վե՞ր կենա, թե՞ աչքը փակի,
Երբ նկուղում՝ երբ էլ զարթնես
Շող չես տեսնի արեգակի:
Շաքեն նիհար ձեռքը մեկնում
Ուզում է մորը փաթաթվել.
Բայց մոր գլուխը չի գտնում.
Դե, պարզ է, որ լույս է արդեն.
Մայրը գործի է գնացել
Ու տուն կգա երեկոյան...
Լամպի պատրույգը կարճացել
Ու ծխում է՝ մթնում կորած:

2.

Ուտելու հաց տանը չկա՛.
Մի բուռ արմավ կա չորացած:
Մայրիկը ե՞րբ տուն պիտի գա,
Որ Շաքեի համար քաղցած,
Հետը մի հատ նարինջ բերի,
Կամ նաշ բերի գեթ մի պնակ...
Հենած գլուխը ձեռքերին,
Միտք է անում Շաքեն մենակ:
Վաղուց արդեն սրբել է նա
Կարգի բերել սենյակն ու տուն:



Ամանե՞րը... Ի՞նչ լվանալ,
Երբ որ նրանք չեն կեղտոտվում:
Դե, ի՞նչ անի հիմա Շաքեն,
Էլի՞ տիկնիկ խաղա մենակ,
Այ, թե Շաքեն էլ Ջորջի պես
Կարողանար դպրոց գնա՜լ...
Բայց հայրիկը դրամ չունի,
Որ անգամ տունը հաց բերի,
Գրիգորիկի՞ն կանչի տնից՝
Նա էլ քնած է երևի...
Հե՞շտ է գիշերը անդադար
Կաբարեյում հոր հետ երգել...
... Մեկ էլ բակից մի մեծ գնդակ
Գլորվում է ընկնում ներքև.
(Չէ՞ որ ցածր է լուսամուտը՝
Հազիվ հասնում է մայթերին...)
Ի՞նչ էլ սիրուն ու կապույտն է.
Ջորջի գնդակն է երևի:
Շաքեն դուռը արագ փակում,
Գնդակն առած բակ է վազում.
— Էհե՜յ, Ջորջի՜...— բայց Ջորջն իսկույն
Դռան առաջ վրա հասնում,
Ու այնպես է հրում աջից,
Որ Շաքեն վար է գլորվում.
— Աղտոտ հայի աղտոտ աղջիկ,
Այդ ո՞ւմ գնդակն ես գողանում...
Շաքեն գետնին ընկած լալիս
Ու կանչում է իր մայրիկին:
Երեխաները մոտ գալիս՝

Լուռ շարժվում են նրա կողքին.
Իսկ Շամիլը՝ արաբ տղան,
Ցավից սեղմած բռունցքն իր սև
Հարձակվում է Ջորջի վրա
Ու նրան լավ կղնգսեր,
Թե Շամիլի մայրը չգար՝
Ետ չքաշեր իր տղային…
Ջորջի հայրը անգլիական
Հայտնի սպա է ծովային:
Վախենում են Ջորջի հորից
Հայրիկները անգամ բակի…
— Դե՛, ուժեղ է նա բոլորից
Ասում է մի արաբ մանկիկ:
— Նա ուժե՞ղ է մեր բոլորից,—
Կտրում է իր լացը Շաքեն,—
Ստալինը կրնա անոր
Մի ճկույթով գետին զարկել:
Ստալինը միս-մինակս
Հիտլերին է զարկած գետին…
… Ջորջը առած իր գնդակը
Հեռանում է նրանց մոտից:

3.

Ձուկը լողում է հատակին,
Մանուկները՝ ջրի վրա,
Բայց թե նավի կամրջակից
Մեկը սև փող նետի նրանց,
Ձուկն ինչքան էլ խորքում լողա
Ոչինչ էլ չի կարող անել.
Իսկ աղքատի փոքրիկ տղան
Կարող է այն ծովից հանել,
Հանել, մի բուռ արմավ գնել,
Կամ մի կտոր քաղցր լոխում…
… Շամիլն երկու ֆրանկ հանել
Ու Շաքեի մոտ է լողում:
Կապտել է նա արդեն ցրտից,
Ատամներն է զարկում իրար.
… Հանկարծ ծովի բաց կապույտից,
Ինչպես քաղաք՝ ծովի վրա,
Մի հսկա նավ է երևում
Կայմի վրա՝ կարմիր դրոշ:
Շամիլն ափին է մոտենում,
Սակայն արդեն զինվորներով
Շղթայվել է ափը ծովի,
Որ ժողովուրդը մոտ չգա.
Չը ողջունի հսկա նավին՝
Սովետական երկրից եկած:
Իսկ ժողովուրդը ալմկում,
Մոտենում է կամրջակին.
Կարծես հսկա ծովեր երկու
Փոթորկվում են իրար կողքի,
Եվ ուր որ է կմիանան,
Խեղդած շարքը զինվորների…
— Շամի՛լ, նավին մի՛ մոտենար.
Ձայն է տալիս Շաքեն հեռվից:
Սև փողերը ափում սեղմած
Ափ է ելնում Շամիլն արագ:
— Գո՛ղ է, գո՛ղ է, բռնեք դրան,—
Ջորջն է խոսում ձայնով բարակ:

Եվ մինչ Շամիլը գար ուշքի,
Ոստիկանը ետքից հասած՝
Խլում է սև փողը ձեռքից
Ու գլորում է նրան ցած:
Ջուր է լալիս Շամիլն ընկած



Ու ետ ուզում փողերն իր սև…
— Տղա՛ս, ելի՛ր, զուր մի՛ տնքա,—
Հորդորում է ձկնորսը ծեր,
Աղքատ մարդուն հոս կյանք չկա
Հոս մեր նավին չկա կայան…»
— Շամի՛լ, հերի՛ք լացով կանչես,
Ուշ է արդեն, եկուր երթանք…
— Մեկ է՝ այստեղ ապրողը չեմ,
Ես այս նավով պիտի փախչեմ,—
Պատասխանում է նա հաստատ:

4.

Շաքեն մյուս օրը զարթնեց,
Հայրը տանն էր.
Ա՛յ քեզ հրաշք,
—«Հայրի՛կ, Ջորջը ինձի զարկեց…»

Սակայն նայրը գրկեց նրան,
Եվ մի գնդակ տալով նվեր,
Ասաց նրան մեղմ ու հանդարտ.
— Ալ Ջորջը քեզ բան չի՞ ըներ՝
Վաղն Հայրենիք պիտի երթանք.
Հոն ո՛չ Ջորջ կա, ո՛չ ոստիկան,
Ոչ ոք կրնա էլ մեզ տանջել,
Հայրենիքը Սովետական
Նավ է ղրկել ու մեզ կանչել:
— Հայրի՛կ, Շամիլն ինձի ըսավ,
Թե այդ նավով պիտի փախչի...
— Ոչի՞նչ, եթե մնա հոս ալ՝
Ստալինը չի թողուր կորչի...

5.

Նավը խարիսխը հավաքել՝
Օրորվում է ջրի վրա,
Ողջ քաղաքը ծովափ եկել՝
Ճանապարհ է դնում նրան:
Գրիգորիկը՝ հոգնած, քնատ,
Իր կույր հոր հետ ափ է եկել.
— Շաքե՛, ինձի չմոռանա՛ս,
Ինձի նամակ պիտի ղրկես...
Մայրը հազիվ է Շամիլին
Ափից քաշում, հեռու տանում:
— Բարև՛ արեք Ստալինին,—
Մեր ձկնորսն է ձեռքով անում:
Նավը դանդաղ պտույտ անում
Ու ճեղքում է ծովը կապույտ.
Կարմիր դրոշը ծածանվում,
Արևի պես լույս է թափում:
Ստալինը՝ մեծ կտավից
Բարի երթ է մաղթում խաղաղ...
... Ու լսվում է մեկնող նավից՝
«Страна моя
Москва моя».



# Հյուսիսային ՂՐԻՄԻ ՋՐԱՆՑՔԸ

*Ս. ԻՍԱՀԱԿՅԱՆ*
(Տեխնիկական գիտությունների թեկնածու)

Անցյալ տարի ամառը Վահագնը գնացել էր Ղրիմ հանգստանալու: Նա շատ հետաքրքիր բաներ պատմեց Ղրիմի բնության գեղեցկությունների, ծովի և սանատորիաների մասին: Ես ծնողներիս խնդրեցի, որ այս տարի մենք էլ գնանք այնտեղ: Երեկոյան, երբ խոսում էինք մեր ծրագրերի մասին, մայրիկս ափսոսաց, որ դեռ Վոլգա—Դոն ջրանցքը պատրաստ չէ. թե չէ այդ ջրանցքով կարելի էր մտնել Ազովի ծով, իսկ այնտեղից Ղրիմ: Հայրիկս ուրիշ ծրագիր էր կազմել: Նա մտածել էր ինձ ծանոթացնել Ղրիմի կյանքին: Ես զարմացա, երբ այժմյան Ղրիմը Հայրիկս հին անվանեց, բայց նա ինձ բացատրեց իր միտքը.

— Այդքան մեծ հռչակ վայելող Ղրիմն այն մեծ թերակղզին չէ, որ դու տեսնում ես քարտեզում:

Ես նորից զարմացած նայեցի հորս, որովհետև աշխարհագրությունից ինձ հայտնի էր միայն մի Ղրիմ: Բայց նա բացատրեց.

— Ղրիմի թերակղզու միայն հարավային ափը՝ 2—8 կիլոմետր լայնությամբ, հայտնի է որպես Եվրոպայի ամենագեղեցիկ անկյուններից մեկը: Այնտեղ լեռները ծածկված են բուրավետ ծաղիկներով, անտառ-

ներով, խաղողի այգիներով: Աճում է նաև կիպարիսը: Մի փոքր դեպի հյուսիս ձգվում են Ղրիմի լեռները, որոնց հովիտները ծածկըված են փարթամ արոտավայրերով: Ղրիմի հյուսիսային մասը տափաստանային է, որը կազմում է ամբողջ թերակղզու երեք-քառորդ մասը: Այստեղ հողն արգավանդ է, բայց շատ հաճախ կոլխոզնիկները բերք չեն կարողանում հավաքել, որովհետև երեք-չորս տարին մեկ երաշտ է լինում, իսկ ջրելու ջուր չկա:

Սրանից 40 տարի առաջ ռուս ինժեներ Մարգունենկոն առաջարկել է Ղրիմի տափաստանը ջրելու իր համարձակ ծրագիրը: Դրա համաձայն ջուրը Դնեպրից ջրանցքով պետք է բերվի Ղրիմ: Բայց այդ ծրագիրը ցարական կառավարության անուշադրության մատնեց:

1950 թվականին մեր կառավարությունը որոշեց ջրանցք կառուցել նաև Ղրիմում...

Այդ պահին Վահագնը բախեց մեր դուռը: Նա եկել էր ինձ հետ շախմատ խաղալու, բայց հայրիկի զրույցն այնքան հետաքրքիր էր, որ նա էլ մեզ հետ սկսեց ուշադիր լսել: Հայրիկս շարունակեց.

— Ջուրը Դնեպրից Ղրիմի տափաստանը տեղափոխելու համար այժմ նախատեսված է մի մեծ ջրանցք կառուցել: Նրա երկարությունը 550 կիլոմետր է լինելու: Սկիզբ առնելով Դնեպրից, նա հասնելու է Մոլոչնայա գետին, ապա Ասկանիա-Նովայի ուղղությամբ գնալու է դեպի Սիվաշ: Այս մասը կոչվում է Հարավային Ուկրաինական ջրանցք...

Հայրիկս խնդրեց աշխարհագրական ատլասը և ցույց տվեց Ղրիմի ջրանցքի մոտավոր գիծը: Այդ ջրանցքն անցնում է Սիվաշի մոտով և Ղրիմի երկաթուղագծի ուղղությամբ գնում դեպի Ջանկոյ ու Կերչ: Սա էլ Հյուսիսային Ղրիմի ջրանցքն է:

Հարավային Ուկրաինական և Հյուսիսային Ղրիմի ջրանցքները մեկը մյուսի շարունակությունն են կազմում: Այս ջրանցքով մի վայրկյանում 600—650 խորանարդ մետր ջուր է հոսելու, այսինքն՝ այնքան, որքան հոսում է ամռանն ամբողջ Դնեպրով: Ջրանցքն ամառվա ամիսներին Դնեպրից քիչ ջուր է վերցնելու, դրա փոխարեն օգտագործվելու է ջրամբարներում նախօրոք կուտակված ջուրը: Այդպիսի ջրամբարներ լինելու են մի քանիսը: Դրանցից ամենախոշորներն են՝ Մոլոչնայա գետի, Դնեպրի և Կախովկայի մոտի ջրամբարները: Կախովկայի ջրամբարի ծավալը պետք է լինի տասն և չորս միլիոն խորանարդ մետր, իսկ Մոլոչնայա գետինը՝ վեց միլիոն: Այսպիսի մեծ ջրամբարներ ստեղծելու համար կառուցվելու են հսկայական, շատ բարդ պատվարներ: Այս ջրամբարների ջուրը օգտագործվելու է նաև էլեկտրէներգիա ստանալու համար: Միայն Կախովկայի էլեկտրակայանը տալու է տարեկան մի միլիարդ 200 հազար կիլովատտ ժամ էներգիա: Այս ջրանցքների ջրով ջրվելու է մեկ և կես միլիոն հեկտար հող, որտեղ կարելի է ցանել բարձրորակ ցորեն, բամբակ, ծխախոտ, աճեցնել խաղողի այգիներ: Ջրովի ցորենի բերքը կավելանա երկու-երեք, իսկ բամբակինը՝ մի քանի անգամ:

Ջուր է տրվելու նաև մի միլիոն 700 հազար հեկտար արոտավայրերի, որը հնարավորություն կտա զարգացնելու ցեղային ոչխարաբուծությունն ու թռչնաբուծությունը. Ղրիմի լեռները կծածկվեն նոր անտառներով: Բացի այդ, Կախովկայի ու Մոլոչնայա գետի վրա կառուցվող էլեկտրակայանների էներգիայով կաշխատեն էլեկտրական տրակտորները, բերքահավաքի, անասունների կեր պատրաստող մեքենաները: Այդ կայանները լրացուցիչ էլեկտրական էներգիա կըտան նաև Ղրիմի թեթև և սննդի արդյունաբերությանը: — Դեռ շատ աշխատանք է պետք այս բոլորը կատարելու համար,— ասաց հայրս:— Միայն 250—300 միլիոն խորանարդ մետր հող պետք է փորվի. իսկ դա վեց անգամ ավելի է Սևանա լճի ծավալից: Հյուսիսային Ղրիմի ջրանցքում չորս անգամ ավելի շատ հողային աշխատանք է կատարվելու, քան կատարվել է Սուեզի ջրանցքը կառուցելիս: Ղրիմի ջրանցքը պետք է պատրաստ լինի 1956 թվականին: Մեր գիտնականները և ինժեներներն այնպիսի նոր շինարարական մեքենաներ են հնարել. որոնցով հնարավոր կլինի արագ ավարտել այդ կառուցումները:



# ԷՌՆՍՏ ԹԵԼՄԱՆ

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Էռնստ Թելմանի հայրը՝ Իոհանը, Գերմանիայի հյուսիսի ազատասեր գյուղացիներից էր։ Նա եկել էր Համբուրգ և գարեջրատուն բացել։ Այդպիսի գարեջրատներում հավաքվում էին բանվորները և մտածում իրենց ազատության մասին։ Կառավարությունը դաժանորեն հետապնդում էր նրանց։ Երբ 1886 թվականի ապրիլի 16-ին ծնվեց Էռնստը, նրա հորը ձերբակալեցին և գարեջրատունը փակեցին։ Մայրը ստիպված աշխատանքի մտավ, իսկ որդուն հանձնեց ազգականների խնամքին։

Բանտից ազատվելուց հետո Իոհանը թույլտվություն ստացավ մի ներքնահարկում կրպակ բաց անել։ Էռնստի մանկության տարիներն անցան այդ ներքնահարկում։ Նա դասերից ազատ ժամերին օգնում էր հորը, իսկ աշխատանքից հետո ագահորեն կարդում էր։

Դպրոցը վերջացնելուց հետո Էռնստը տնից անհայտացավ։ Սկզբում հնոցապանի օգնական էր մի շոգենավի վրա, ապա բանվոր էր Ամերիկայում։ Շուտով նա վերադարձավ և նորից հաստատվեց հայրենի Համբուրգ քաղաքում։ Ամբողջ օրը բեռնակրությամբ էր զբաղվում, իսկ ուշ երեկոյան կարդում էր ռևոլյուցիոն գրքեր։

Այդ ժամանակ բանվորները համախմբվում էին պրոֆմիություններում և պայքարում իրենց իրավունքների համար։ Էռնստ Թելմանը սկսում է մասնակցել բանվորական շարժմանը։ Նա սկզբում տրանսպորտի բանվորների պրոֆմիության անդամ էր, իսկ հետո չորս անգամ ընտրվել է պրոֆմիությունների համագումարների դելեգատ։

Մի անգամ ձեռնարկատերը, որի մոտ աշխատում էր Թելմանը, փորձեց կաշառել նրան, որ նա այլևս չկազմակերպի բանվորներին։ Թելմանը զայրացած մերժեց։ Նրան աշխատանքից հեռացրին։

Համաշխարհային առաջին պատերազմի ժամանակ Թելմանը զինվոր էր։ Նա վրդովվում էր, որ բթամիտ պրուսացի սպաները արհամարհում էին զինվորներին։ Եվ նա պայքարում էր պատերազմի և նրա կազմակերպողների դեմ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ 1918 թվականին ռևոլյուցիոն շարժումներ սկսվեցին նաև Գերմանիայում։ Կայզերական կառավարությունը տապալվեց։ Թելմանի կոչով բանվորները զինվեցին խոշոր կապիտալիստների դեմ պայքարելու համար։

1924 թվականին Թելմանն ընտրվեց Գերմանիայի կոմպարտիայի նախագահ և Ռայխստագի (պառլամենտի) դեպուտատ։

Թելմանը անխորտակելի կամքի և արիության տեր էր։ Թշնամիները նրա կյանքի դեմ մահափորձ կատարեցին, բայց նա անվնաս մնաց։ Կոմպարտիայի կազմակերպված ցույցերի ժամանակ նա միշտ լինում էր առաջին շարքում։

Ահա նա, միջահասակից մի քիչ բարձր, թիկնեղ, փոքր ինչ օրորուն քայլվածքով։ Քայլում է և իր բարի, կապույտ աչքերով ժպտում բոլորին։

— Թեդդի՜ն, մեր Թեդդի՜ն,— գոչում են բանվորները և միանում նրան։

Այդ անունով բանվորներն արտահայտում էին իրենց սերը դեպի առաջնորդը։

1924 թվականին Համբուրգի բանվորները գերմանական կոմունիստների առաջնորդներ Կառլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի հիշատակին նվիրված միտինգ կազմակերպեցին։ Այդ ժամանակ կոմպարտիան արգելված էր։ Ոստիկանությունը փնտրում էր Թելմանին։ Եվ ահա տրիբունայի վրա անսպասելի կերպով հայտնվեց նա։ Երբ նա վերջացրեց իր ճառը, բանվորները նրան այնպիսի ամուր օղակով շրջապատեցին, որ ոստիկանները չկարողացան ճեղքել նրանց շարքերը և ձերբակալել Թելմանին։

Թելմանը պարզ էր, ուղղամիտ ու ազնիվ։ Նա ժողովրդին պատմում էր, թե ովքեր են նրա իսկական բարեկամներն ու թշնամիները։ Նա պայքարում էր ժողովրդի թշնամիների դեմ։ Նա էր, որ ստեղծեց բանվորական ինքնապաշտպանության կազմակերպությունը՝ Կարմիր ճակատայինների ջոկատները։

Թելմանը համեստ էր։ Սիրում էր լինել բանվորների շրջանում, նույնիսկ նրանց հետ մի բաժակ գարեջուր խմել, բայց աննկատելի մնալ։ Փառամոլ չէր։ Սովորեցնում էր ժողովրդին և սովորում նրանից։ Ընկերների նկատմամբ և՛ պահանջկոտ էր, և՛ հոգատար։

Թելմանը ձգտում էր, որ գերմանական ժողովուրդը մյուս ժողովուրդների և առաջին հերթին սովետական մեծ ժողովրդի հետ բարեկամ լինի և խաղաղ ապրի։ Թելմանը գերմանական կոմպարտիան դարձրեց միասնական ու հզոր։ Կոմպարտիան Գերմանիայում այնպիսի հեղինակություն ձեռք բերեց, որ ժողովուրդը նրա առաջնորդին, Թելմանին, մի քանի անգամ երկրի պրեզիդենտի թեկնածու առաջադրեց։ Ֆաշիստական հեղաշրջումից մի քիչ առաջ նրա օգտին ձայն տվեց վեց միլիոն մարդ։ Սա մեծ թիվ էր։

Թելմանը և նրա ղեկավարած կոմպարտիան պայքարում էին հակաֆաշիստական միասնական ժողովրդական ճակատ ստեղծելու համար։

Չնայած դրան, 1933 թվականին հիտլերականները տիրապետություն հաստատեցին Գերմանիայում։ Նրանց աջակցում էին խոշոր կապիտալիստներն ու ազնվականները։ Հիտլերականները հալածում էին կոմունիստներին, երկրի առաջավոր մարդկանց։

Թելմանն այդ հալածանքներից ազատ չմնաց։ Մարտի սկզբին Թելմանին ձերբակալեցին։ Բանտում նրան տանջում էին բոլոր միջոցներով, բայց նա անդրդվելի մնաց։

Երբ 1941 թվականի աշնանը գերմանական զավթիչները հասել էին Մոսկվայի ու Լենինգրադի մոտերքը, մի քանի ֆաշիստ եկան նրա մոտ.

— Հը՛, այժմ ի՞նչ կասեք։ Սովետական Ռուսաստանի բանը վերջացած է։ Կարմիր Բանակը ջարդված է։

Թելմանը կարճ ու խիստ պատասխանեց.

— Ստալինը ոլորելով կպոկի Հիտլերի վիզը։

Ֆաշիստները Թելմանի համար դատապաշտպան ընտրեցին։ Այդ դատապաշտպանը Հիտլերի հուսալի մարդկանցից էր՝ Ֆրիդրիխ Ռետտեր անունով։ Բայց դոկտոր Ռետտերը ծանոթացավ Թելմանի գործին և սկըսեց հարգանքով վերաբերվել խիզախ և ուժեղ կամքի տեր այդ մարդու նկատմամբ։ Ռետտերը հոգեկան տատանումների մեջ էր։ Միթե՞ կարելի էր այսպիսի մարդուն մեղադրել։ Եվ նա դուրս եկավ ծայրահեղ դրությունից։ Մի օր թողեց Գերմանիան ու փախավ արտասահման։ Տասնմեկ ու կես տարի Թելմանը միայնակ մնաց բանտում։

1944 թվականն էր. Հիտլերի տիրապետության վերջին ամիսները։ Ֆաշիստները խստացրին հսկողությունը Թելմանի նկատմամբ։ Մի ականատես պատմում է, թե ինչպես են նրան սպանել։

Օգոստոսի մի գիշեր դիակիզարանին մոտեցավ մարդատար ավտոմեքենան։ Նրա միջից դուրս եկան երեք մարդ։ Երկուսը երրորդ մարդուն հրեցին առաջ և չորս անգամ տեղից կրակեցին։ Մարդն ընկավ։ Հետո տեղն ու տեղը այրեցին նրան։ Սպանվողը հենց Թելմանն էր։ Ֆաշիստները լուր տարածեցին, թե Թելմանը ռմբակոծությունից է սպանվել, բայց դա սուտ էր։

Այսպիսով ֆաշիստները վախեցան նրան հրապարակորեն դատելուց և սպանեցին։ Թելմանը մինչև իր վերջին շունչը պայքարեց ժողովրդի ազատագրության և երջանկության մեծ գործի համար։ Նրա հերոսական կերպարը ապրում է և միշտ կապրի նոր Գերմանիան կառուցողների ու բոլոր ժողովուրդների սրտերում։



# ՈՐՏԵՂ ԻՆՉ ՈՐՈՆԵԼ





Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

Ճամբար մեկնելուց առաջ թանգարանի վարիչը մեզ մի հանքաքար ցույց տվեց և այսպես սկսեց իր զրույցը.

— Սա ցինկ է։ Անցյալ տարի ճամբարի մի խումբ պիոներներ իրենց վրանի շուրջը առվակ են փորում անձրևաջրի համար։ Այդ ժամանակ էլ գտնում են հանքատեսակի այս փոքրիկ նմուշը և քաղաք բերում մեզ ցույց տալու։

Մի շաբաթ հետո մենք գեոլոգ և բանվորներ ուղարկեցինք վայրը փորփրելու և ուսումնասիրելու։ Պարզվեց, որ այնտեղ ցինկի խոշոր հանքավայր կա։

Մի անգամ գյուղացիները իրենց հյուր գեոլոգի համար մի սագ են մորթում ու այն մաքրելիս նկատում են՝ սագի բերանի ավազի մեջ ոսկու պես փայլուն երկու հատիկ կա։ Եվ ինչ, հետաքրքրվելով, թե որ գետում են լողանում սագերը և որտեղ են նրանք արածում, գեոլոգը հենց գյուղի կողքի գետափում ոսկու հանքեր է հայտնաբերում։

Շատ է պատահել, որ պիոներներն այսպիսի խոշոր հանքավայրեր գտնեն։

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Իհարկե դուք ամիսներ շարունակ կարող եք հանք որոնել և չգտնել, բայց մի օր էլ, երբ պատահմամբ մի քար եք վերցնում, նրա վրա նկատում եք մանր փայլուն բյուրեղներ։ Այդ նշանակում է հանքի բանալին գտնված է կամ, ինչպես ասում են, «լեզու բռնեցիք», այնուհետև ինքներդ կամ փորձված գեոլոգը կգտնի հանքի ճիշտ տեղը և կիմանա՝ որտեղից է բերված այդ նմուշը։ Այդպիսի երջանիկ պատահականություններ լինում են հարյուր տարին մի անգամ։ Դրանց վրա հույս դնել չի կարելի։ Հանքերը պետք է որոնել և ահա թե ինչպես։

Ձեր զբոսանքների ժամանակ փորձեցեք միներալների և ապառների կոլեկցիաներ կազմել դպրոցական թանգարանի համար։ Չմոռանաք, որ դուք կարող եք օգտակար հանածոների հետաքրքիր հանքավայրեր գտնել։

Ճամբար մեկնելուց առաջ դուք կազմել եք ամենից շատ տարածված օգտակար հանածոների ու հանքատեսակների ցուցակը, գրել նրանց գլխավոր նշաններն ու հատկությունները՝ հեշտությամբ ճանաչելու համար։

Բնության մեջ ամեն մի հանքատեսակ և ապար օգտակար հանածո է։ Այն, ինչ որ այսօր դեռևս օգտակար չէ, վաղը կարող է ամենաօգտակարը լինել։

Հին ժամանակներում հանքափորները չիմանալով մի շարք միներալների օգտագործման եղանակը, նրանց նախատական անուններ են տվել։ Օրինակ՝ սֆալերիտ, նշանակում է խաբեբա, կամ ապատիտ՝ նենգ, խորամանկ։ Այդ միներալներն իրենց փայլով ու տեսքով հրապուրում էին հին հանքագործներին, բայց վերջիններս չէին կարողանում դրանցից մետաղ ստանալ։ Հանքափորը փորձում էր հալել սֆալերիտը, բայց չէր կարողանում և ստիպված այդ հանքատեսակն անվանեց սֆալերիտ բառով, որը նշանակում է խաբեբա։ Այժմ սֆալերիտը ցինկի հանքն է։ Մարդը սովորել է օգտագործել այդ հանքը, թեև հին անունը պահպանվել է։

Մենք հաճախ քայլում ենք դաշտում կավերի և ավազների վրայով։ Չէ որ դրանք էլ օգտակար հանածոներ են։ Օրինակ՝ բոքսիտը իր տեսքով իսկական կավ է։ Այդ կավը հազարավոր տարիներ անպետք է եղել, իսկ այսօր բոքսիտը, այդ կարծրավուն, վառորակ կավը, ալյումինի լավագույն հանքն է։ Հազարավոր ինքնաթիռներ են ծնվել այդ գորշկարմրավուն կավից։ Առանց կավերի չէին լինի ո՛չ հրաշալի ափսեներն ու գավաթները և ո՛չ էլ էլեկտրիֆիկացիայի համար այնքան անհրաժեշտ մեկուսիչները։ Առանց կավի չի կարելի պատրաստել ո՛չ օճառ, ո՛չ կաուչուկ։

Հանքերի ու ապարների նմուշներ հավաքելիս անհրաժեշտ է այդ նմուշը փաթաթել մի թղթում և նրա վրա գրել հասցեն, մոտավորապես այս ձևով։

> Կոլեկցիա Մ. Ասլանյանի
>
> № 5
>
> ՏԱԼԿ
>
> Մաղկաձորի ճամբարից դեպի հյուսիս, մոտ 100 մետր հեռավորության վրա, գետակի ափին։ 15.8.51 թ.

Ոմանք կարծում են, թե հանքերը լինում են միայն լեռներում։ Դա բոլորովին էլ այդպես չէ։

Հանքատեսակները բնության մեջ պատահական կերպով չեն գտնվում, նրանցից ամեն մեկն այս կամ այն հանքի նշան է և նրանց լեզուն լավ հասկանալու համար պետք է համապատասխան գրքեր կարդալ, օրինակ՝ Ա. Ե. Ֆերսմանի «Հետաքրքրաշարժ գեոքիմիան», որ Պետհրատը հրատարակել է հայերեն։

Հանքեր գտնելու համար ճիշտ և հեշտ ճանապարհը կոլեկցիաներ կազմելն է։ Պարտադիր չէ, որ դուք անպատճառ ոսկու կամ արծաթի հանք գտնեք։ Դուք կարող եք գտնել շատ կարևոր շինանյութերի հանքեր, որոնցից ծաղկող սոցիալիստական քաղաքներ կկառուցեն։

Շատ և շատ կարևոր հանքեր կան, որ դեռևս գտնված չեն. բայց դրանք էլ անշուշտ կգտնվեն։

Եվ այս գործում պիոներները մեծ անելիքներ ունեն։



# ԲԱԿԱՅԻՆ ՃԱՄԲԱՐՆԵՐԸ

Վերջանում է պիոներական ուրախ ու հետաքրքիր ամառը:

Ամռան ընթացքում հազարավոր երեխաներ եղան պիոներական ճամբարներում, ամառանոցներում, սանատորիաներում: Շատերն էլ մնացին քաղաքում: Նրանց ամառը պակաս հետաքրքիր չանցավ:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի 6-րդ պլենումի հատուկ որոշումով երեխաների ամառային հանգիստը խելացի կազմակերպվեց: Այդ որոշման համաձայն քաղաքներում բակային ճամբարներ, դպրոցներին կից ճավաքական դրուժինաներ և առողջապահական հրապարակներ ստեղծվեցին:

Երևանի և Հայաստանի մյուս քաղաքներում նույնպես կազմակերպվեցին բազմաթիվ հավաքական դրուժինաներ, առողջապահական հրապարակներ և բակային ճամբարներ: Առանձնապես մեծ թափ ստացան բակային ճամբարները: Մայրաքաղաքի գրեթե բոլոր մեծ բակերում փողփողում են ճամբարային դրոշները:

Բակային պիոներական ճամբարներն այն հավաքական դրուժինաներն են, որոնք իրենց աշխատանքը կազմակերպում են քաղաքամերձ ճամբարների օրինակով:

Այս տարվա փորձը ցույց տվեց, որ բակային ճամբարներն իրոք մեծ գործ են կատարում երեխաների ամառային հանգիստը խելացի կազմակերպելու, նրանց ինքնագործունեությունը զարգացնելու ուղղությամբ:

Երևան քաղաքի Մոլոտովյան ռայոնի № 88 բակային ճամբարը մեկն է այն հարյուրավորներից, որ կազմակերպվեց այս տարի: Այստեղ տարբեր դպրոցներում սովորող մոտ 70 երեխա ամառվա ընթացքում կազմեցին մի համերաշխ ու կուռ կոլեկտիվ...

Վաղ առավոտյան բակի պիոներներին արթնացնում է շեփորը: Երեխաներն անմիջապես դուրս են վազում բակ և սկսում մարմնամարզական վարժությունները:

Այսպես է սկսվում ճամբարային հետաքրքիր օրը: Օրվա ընթացքում երեխաները պարապում են զանազան խմբակներում, կազմակերպում ֆիզկուլտ խաղեր, գրական երեկոներ, կոլեկտիվ կինոդիտումներ և էքսկուրսիաներ: Նրանք նույնիսկ եղան Քանաքեռ Խ. Աբովյանի տուն-թանգարանում, Առաջնորդի մոնումենտ-քանդակի մոտ և շատ ուրիշ տեղեր:

Հետաքրքիր է անցնում կյանքը նաև Սպանդարյան ռայոնի № 10 բակային ճամբարում: Երեխաներն այստեղ հանդիպում են ունեցել բանաստեղծ Նաիրի Զարյանի և ուրիշների հետ, կազմակերպում են հետաքրքիր խաղեր, իրենց ուժերով ցուցադրում են կինոֆիլմեր և այլն:

Բակային ճամբարներում, երեխաները խորացնում են դասերի ընթացքում ձեռք բերած գիտելիքները, նոր երգեր ու խաղեր են սովորում, կոլեկցիաներ հավաքում նարազատ դպրոցների համար:

Բակային ճամբարների պիոներները մասնակցեցին Մաղկաձորում կազմակերպված պատանի ճանապարհորդների տրադիցիոն հավաքին, նրանց երգեցիկ խմբերը հաջողությամբ ելույթ ունեցան երգի տոնին, որը տեղի ունեցավ Երևանում օգոստոսի 15-ին:

Օգոստոսի 25-ին կիջեցվեն բակային ճամբարների դրոշները մինչև հետևյալ ամառ: Ուսումնական տարվա ընթացքում բակային ճամբարները, հավաքական դրուժինաները և ջոկատները պետք է դադարեն գործելուց:

Մեր ամսագրի 7-րդ համարում տպագրված «Փոքր ջոկատի մեծ գործերը» ակնարկում նկարագրված էր մի բակային ճամբար, որը շարունակում է աշխատանքը նաև ուսումնական տարվա ընթացքում: Չպետք է հետևել այդ ակնարկում եղած սխալ խորհրդին, որովհետև նման հավաքական ջոկատների կարիքը ուսումնական տարվա ընթացքում բոլորովին չի զգացվում:

**Ավագ ջոկատավարի գրույցը**

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Շուտով կվերջանան ամառային արձակուրդները և դու կազդուրված ու հանգստացած կվերադառնաս հարազատ դպրոց: Թարմ ուժերով դու կշարունակես քո ուսումը: Ուսուցիչներն ու դաստիարակները քեզ կօգնեն տիրապետելու գիտության բարձունքները, դառնալու կոմունիզմ կառուցող իսկական քաղաքացի: Այդ մեծ գործում քեզ շատ կօգնի նաև պիոներական կազմակերպությունը, եթե այն լավ է աշխատում:

Պիոներական կազմակերպության լավ աշխատանքը շատ բանով կախված է նրանից, թե ո՞ւմ ես ընտրում դրուժինայի, ջոկատի խորհրդում, ո՞վ է ընտրվում օղակավար:

Սեպտեմբերին տեղի կունենան պիոներական կազմակերպությունների ընտրությունները: Որպեսզի քո դրուժինայի, ջոկատի, օղակի պարապմունքներն ու հավաքույթներն ավելի հետաքրքիր և բազմակողմանի լինեն, դու պետք է դրուժինայի, ջոկատի խորհուրդներում ընտրես ամենից ավելի ակտիվ պիոներների, այնպիսիներին, որոնք լավ են սովորում, կարգապահ են, աշակերտների շրջանում հեղինակություն են վայելում:

Ընտրությունները սկզբում օղակում են տեղի ունենում: Օղակային հավաքույթում լսվում է օղակավարի զեկուցումը: Նա պատմում է, թե օղակն ինչ է արել ուսման գործում, ինչպիսի հետաքրքիր զրույցներ է լսել, նոր խաղեր ու երգեր սովորել, ինչպիսի գրքեր են կարդացել ու օգտակար հասարակական աշխատանք կատարել և այլն: Պիոներները քննարկում են օղակավարի զեկուցումը, հայտնում են իրենց ցանկությունները, առաջարկություններ են անում՝ օղակի աշխատանքները ավելի աշխուժացնելու և հետաքրքիր դարձնելու նպատակով: Օղակա-

վարի տված հաշվետվությունը համառոտակի գրանցվում է ջոկատի օրգանում: Այնուհետև տեղի է ունենում նոր օղակավարի ընտրությունը: Հենց այստեղ է, որ դու պետք է լրջորեն մտածես, թե ո՞ւմ կարելի է առաջադրել օղակավար և ընտրես ամենից արժանավորին:

Ջոկատի խորհրդի ընտրությունները տեղի են ունենում այսպես.

Ջոկատի հավաքույթում ջոկատավարը պիոներներին ծանոթացնում է ընտրությունների կարգի հետ, որից հետո ջոկատի խորհրդի նախագահը հաշվետվություն է տալիս ջոկատի աշխատանքների մասին: Պիոներները քննարկում են հաշվետվությունը, հետո ընտրում ջոկատի խորհուրդ: Նախ ընտրում են խորհրդի նախագահ, ապա դրոշակակիր, պատի թերթի խմբագիր և խորհրդի անդամներ: Ջոկատավարը չի ընտրվում, բայց մտնում է խորհրդի կազմի մեջ:

Այս կարգով էլ ընտրվում է դրուժինայի խորհուրդը: Դրուժինայի խորհրդում, ինչպես ջոկխորհրդի և օղակավարի ընտրության ժամանակ, բաց քվեարկությամբ ընտրվում է 7—15 հոգի: Դրուժինայի խորհուրդը ընտրում է նախագահ, դրոշակակիր և պատի թերթի խմբագիր: Հետագայում խորհրդի մյուս անդամները զանազան հանձնարարություններ են կատարում: Ավագ ջոկատավարը նույնպես չի ընտրված, բայց մտնում է դրուժինայի խորհրդի կազմի մեջ:

Փորձը ցույց է տվել, որ այնտեղ, որտեղ ընտրությունները կատարվել են մտածված կերպով, որտեղ դրուժինայի, ջոկատի խորհուրդների անդամներ և օղակավարներ ընտրվել են լավագույն պիոներները, այնտեղ աշխատանքները շատ ավելի լավ են ընթացել, օրինակ՝ Երևան քաղաքի Ուլյանա Գրոմովայի անվան և Մոլոտովյան ռայոնի 10-րդ դրուժինաներում: Իսկ նույն ռայոնի 4-րդ և 5-րդ դրուժինաներում, դրուժինայի և ջոկատների խորհուրդներում ընտրվեցին այնպիսի պիոներներ, որոնք չէին վայելում ընկերների սերն ու համակրանքը: Այդ պատճառով էլ դրուժինայի աշխատանքները տարվա ընթացքում վատ էին ընթանում:

Պիոնե՛ր, իմացիր, որ ակտիվի ճիշտ ընտրություններից է կախված պիոներական աշխատանքների հաջողությունները: Ընտրությունների ժամանակ առաջադրիր լավագույններին՝ գերազանցիկներին ու կարգապահներին, հասարակական աշխատանքը սիրող ու նախաձեռնող պիոներներին:



28-րդ դպրոցի 4ա դասարանի Ստալինի անվան ամբողջ ջոկատը փոխադրվեց 5-րդ դասարան: Դա ջոկատի, ջոկատի խորհրդի և օղակավարների լավ աշխատանքի արդյունքն էր:

Նկարում՝ ջոկատը քննություններից հետո:

## ՊՐՈՖԵՍՈՐ ԼՈՒՉԻՈՆ ԵՎ ՊԻՈՆԵՐ ՄԵՐԻԱՄԸ

Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ

*Կապիտալիստական երկրների միլիոնավոր աշխատավոր մարդիկ երազում են իրենց երեխաների համար ստեղծել կյանքի այնպիսի պայմաններ, ինչպիսին մեզ մոտ է: Այդ երկրների աշխատավորները ցանկանում են լինել մեր երկրում և սեփական աչքերով տեսնել մեր ուրախ ու երջանիկ կյանքը:*

*Այս տարի Մայիսի 1-ի տոնակատարությանը մասնակցելու համար Իտալիայից Մոսկվա էին եկել «Իտալիա—ՍՍՌՄ» ընկերության պատվիրակները: Նրանք ցանկություն հայտնեցին նաև Սովետական Հայաստան այցելել: Նրանք շատ բան էին լսել հայ ժողովրդի ծանր անցյալի, Հայաստանի բնության մասին և այժմ ուզում էին տեսնել հայ ժողովրդի վերածնված կյանքը:*

*Նրանք եկան Հայաստան, եղան Երևանում, այցելեցին մեր գործարաններն ու ֆաբրիկաները, եղան բանվորների, կոլխոզնիկների և պիոներների մոտ: Բոլոր տեղերից նրանք վառ տպավորություններ ստացան: Նրանցից մեկը՝ Հռոմի համալսարանի մաթեմատիկայի պրոֆեսոր Լոմբարդո Ռադիչե Լուչիոն, այլ ասպարեզնե-*

րում աշխատող մարդկանցից բացի, հանդիպում ունեցավ նաև յոթերորդ դասարանի աշակերտուհի, պիոներ Մարիամի հետ։ Ահա թե ինչպես պատահեց այդ։

Դելեգացիան այցելեց Դվին գյուղը։ Նրանք եղան կոլխոզնիկների բնակարաններում, կոլխոզային դաշտերում, այցելեցին Դվինի միջնակարգ դպրոցը։

Դասամիջոց էր։ Աշակերտները դուրս էին գալիս դասարաններից և աշխուժությամբ լցնում դպրոցի բակը։ Պրոֆեսորը ցանկանում էր նրանցից մեկի հետ անպայման զրուցել։ Նա մտավ մի դասարան, մոտեցավ և բռնեց գրատախտակի մոտից անցնող Մարիամի ձեռքը և ժպտաց։ Մարիամն էլ նրան ժպտաց։ Դա նրանց բարևն էր։ Չէ՞ որ նրանք միմյանց լեզու չէին հասկանում։

Պրոֆեսորը նայեց գրատախտակին ու տեսավ, որ նախորդ դասը թվաբանության դաս է եղել։ Նա ուզեց ստուգել սովետական պիոների գիտելիքները։ Վերցրեց կավիճն ու գրատախտակի մի անկյունում գրեց մի կոտորակային վարժություն, ապա կավիճը մեկնեց Մարիամին։ Մարիամն անմիջապես հասկացավ պրոֆեսորի միտքը։ Նա թեև մի քիչ քաշվում էր, բայց պիոներական արժանապատվությունը նրան թույլ չտվեց հրաժարվել առաջարկից։ Համարձակ վերցրեց կավիճը, նայեց թվերին և անմիջապես լուծեց վարժությունը։ Իտալացի պրոֆեսորը ժպտաց, ուրախացավ։ Նա գովեց աղջկա ուշիմությունը, իսկ Մարիամը մաքրեց գրատախտակն ու իր գեղեցիկ հոնքերի տակից նայեց հյուրին։

Պրոֆեսոր Լուչիոն մի ավելի դժվար վարժություն էլ գրեց. Մարիամն այդ էլ հաջողությամբ լուծեց։

Սակայն պատահեց մի անսպասելի բան։ Մարիամը երրորդ վարժությունը լուծելուց հետո գրատախտակը մաքրեց և նրա վրա գրեց մի հանրահաշվական վարժություն։ Մի քիչ կարմրելով, նա կավիճը մեկնեց հյուրին, ուզում էր ասել՝ «Այս մեկն էլ դուք լուծեք»։

Հռոմի համալսարանի պրոֆեսորը հուզմունքից այլևս չկարողացավ իրեն զսպել։ Նա բացեց թևերը և համարձակ պիոներին սեղմեց իր կրծքին։ Նա ոչ միայն հիացել էր, այլև զարմացել։ Շոյում էր Մարիամի ոսկեգույն մազերը և անընդհատ կրկնում «Բրավո, բրավո»։

Պրոֆեսոր Լուչիոն շատ բան էր լսել սովետական երեխաների մասին։ Եվ այժմ Հայաստանի գյուղերից մեկի լուսավոր և մաքուր դպրոցում պիոներական վզկապ կապած աղջկա գիտելիքներն ու համարձակությունը մի նոր գեղեցիկ տպավորություն էլ ավելացրին մյուսների կողքին։

Պրոֆեսորը նկարվեց Մարիամի հետ, իր ծոցատետրում գրեց նրա անունը և ազգանունը։ Նա ասաց, որ ինքն այդ բոլորի մասին կպատմի Իտալիայում։ Նա կպատմի նաև այն մասին, թե ինչպես են ապրում ու սովորում երեխաները սովետական երկրում։

Հր. ՄԱՐԳԱՐՅԱՆ

# ԿՈՓՎԱԾՆԵՐԻ ՀԱՆԴԵՍԸ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Հուլիսի վեցի առավոտն է։ «Դինամոյի» ստադիոնը զարդարող դրոշները մեղմ հովից տարուբերվում են։ «Բարի գալուստ դպրոցականների ռեսպուբլիկական սպարտակիադայի մասնակիցներին», ազդարարում է ոսկետառ կարմիր կտավը։ Ստադիոն են գալիս պատանի սպորտսմենների զվարթ խմբերը։ Նրանք Երևան են եկել ռեսպուբլիկայի տարբեր շրջաններից ու քաղաքներից դպրոցականների չորրորդ տրադիցիոն սպարտակիադային մասնակցելու համար։

Ժամը տասն է։

— Զգա՜ստ։ Ուղղությունը դեպի կենտրո՜ն,— հրահանգում է սպարտակիադայի գլխավոր դատավորը և մոտենում սպորտային գավաթներով ու փոխանցիկ դրոշներով ծանրաբեռնված սեղանի շուրջը հավաքվածներին։ Նա խրոխտ զեկուցում է, որ դպրոցականների ռեսպուբլիկական սպարտակիադայի մասնակիցները պատրաստ են մրցումներին։ Պատանի սպորտսմեններին ուղղված ջերմ ողջույններից հետո սպարտակիադան հայտարարվում է բացված։

Կարմիր դրոշին են մոտենում թեթև ատլետիկայի սպորտ-դպրոցի սաները, ռեսպուբլիկայի չեմպիոններ՝ Վիլեն Սուքիասյանը, Եղիս Զոբանյանը և Ջոնիկ Մուրադյանը։ Սովետական Հայաստանի հիմնի հնչյունների տակ եռյակը բարձրացնում է սպարտակիադայի դրոշը։ Մրցումներն սկսվում են։

100 մետր տարածության վազքի մեջ մրցում են Երևանի, Լենինականի և Կիրովականի աղջիկները։ Նրանց մեջ են ռեսպուբլիկայի չեմպիոն, Երևանի սպորտ-դպրոցի սան Եղիս Զոբանյանը և Լենինականի Կիրովի անվան միջնակարգ դպրոցի աշակերտուհի

Ալլա Կլիշևիչը։ Հենց սկզբից նախաձեռնությունն իր ձեռքն է վերցնում Ալլան։ Ռեսպուբլիկայի չեմպիոնը լարում է իր ուժերը։ Տարածության կեսին նրանք հավասարվում են և վազում կողք-կողքի։ Ալլան վճռել է հաղթել։ Մի քանի քայլ ևս և նա վազում է առջևից։ Մոտալուտ հաղթանակի հաճույքը կրկնապատկում է նրա ուժերը։ Նա վերջին համառ ճիգն է գործադրում։ Երկարատև, սիստեմատիկ մարզումներն ու համառ կամքը նրան հաղթանակ բերին։ Առաջինը նա կտրեց ֆինիշի ժապավենը։ Վայրկյանաչափը ցույց է տալիս 13,3 վայրկյան։

Հետաքրքիր սպորտային պայքար եղավ նաև տղաների միջև։ 100 մետր տարածության վազքից հաղթող դուրս եկավ Երևանի սպորտ դպրոցի սան Վիլեն Սուքիասյանը։ Նա այդ տարածությունը վազեց 11,9 վայրկյանում։ Բարձրության և երկարության թռիչքի հաղթողն էլ նա էր։

Գնդակի հրման և սկավառակի նետման մեջ հաղթեց նույն դպրոցի սան Վոլոդյա Հովսեփյանը։ Թեթև ատլետիկայի տարբեր ձևերից լավագույն արդյունքներ ցույց տվին՝ Ջոնիկ Մուրադյանը և Էլիանորա Գրիգորյանը։

Երկու օր տևող համառ պայքարից հետո, առաջնությունը շահեց Երևանի թեթև ատլետիկայի հավաքական թիմը։ Երկրորդ տեղը գրավեց Լենինականի, իսկ երրորդ տեղը Կիրովականի թիմերը։

Շրջանների պատանի սպորտսմենների մրցումները վերջացան Ստեփանավանի հաղթանակով։ Երկրորդ տեղը գրավեց Ալավերդու, իսկ երրորդ տեղը՝ էջմիածնի թիմը։ Բասկետբոլի և վոլեյբոլի գծով առաջին տեղերը գրավեցին Երևանի տղաների և աղջիկների հավաքական թիմերը։

Հետաքրքիր անցան նաև լողի մրցումները։ Ֆիզկուլտուրայի կենտրոնական տան ջրավազանը տոնականորեն զարդարված էր։ Այնտեղ էին հավաքվել Երևանի, Լենինականի, Կիրովականի և էջմիածնի պատանի լողորդները։ Երևանի կենտրոնական ջրային կայանի սաներ Ռուբիկ Զարգարյանը «բրասս» լողաձևում՝ 50 և 100 մետր տարածությունների, Շահեն Խաչատրյանը ազատ ոճի լողաձևում՝ 50 և 200 մետր տարածությունների և Անատոլի Պետրոսյանը «կողքի վրա» լողաձևում 50 մետր տարածության վրա սահմանեցին նոր ռեսպուբլիկական ռեկորդներ։ Առաջնությունը շահեց Երևանի պատանի լողորդների հավաքական թիմը։

Բոլոր առաջին տեղեր գրաված դպրոցականները պարգևատրվեցին Լուսավորության մինիստրության գովասանագրերով ու նվերներով։ Մրցումներում առաջնություն շահելու համար փոխանցիկ գավաթներ ստացան Երևանի պատանի թեթև ատլետների, լողորդների, բասկետբոլիստների ու վոլեյբոլիստների հավաքական թիմերը։



200 մետր վազքի մեջ լավ արդյունքի հասավ Լենինականի № 2 դպրոցի աշակերտուհի Տուֆա Հարությունյանը։

Նկարում՝ Տ. Հարությունյանը ֆինիշում։



110 մետր արգելավազքի մեջ առաջին տեղը գրավեց Կիրովականի № 2 դպրոցի աշակերտ Նորիկ Կիրակոսյանը։

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Հանելուկային նկար

Այսօր լույս տեսավ ճամբարի պատի թերթի նոր համարը: Հատկապես հարուստ էր «Ժամանց» բաժինը: Պիոներները թուղթ ու մատիտը ձեռքներին խմբվել են թերթի առաջ, կարդում, մտածում, արտանկարում են ու փորձում գտնել պատասխանները: Եկեք մենք էլ մտածենք ու գտնենք:

Առաջարկներից առաջինը այս նկարն է, որ գրավել է բոլորի ուշադրությունը:



Առաջարկվում է ուշադիր նայել նկարին և պատասխանել հետևյալ հարցերին.

1. Շոգենավը գետի հոսանքով վե՞ր, թե՞ վար է գնում:
2. Այստեղ տարվա ո՞ր եղանակն է պատկերված:
3. Այս տեղում խո՞րն է արդյոք գետը:
4. Հեռո՞ւ է արդյոք նավահանգիստը:
5. Նավահանգիստը ա՞ջ, թե՞ ձախ ափին է գտնվում:
6. Այս նկարում նկարիչն օրվա ո՞ր ժամանակն է պատկերել:

## Խորհրդավոր արձանագրություն

Սարի կատարի արևելյան կողմում ժայռի վրա կա մի մեծ հարթություն: Նրա վրա գրված է այս խորհրդավոր արձանագրությունը:

Իմացեք, թե ի՞նչ է գրված քարի վրա:



## Ինչպե՞ս

Ինը պիոներ խոտի վրա հանգստանալիս, նկատեցին, որ իրենք պատահաբար այնպես են նստել, որ ստացվել է 9 շարք, ամեն շարքում՝ 3 պիոներ:

Սուրիկը մտածեց ու ասաց.

— Մենք կարող ենք նստել նաև այնպես, որ կազմենք 10 շարք: Ամեն շարքում դարձյալ՝ 3 պիոներ:

Մտածեցեք, ի՞նչպես էին սկզբում նստած պիոներները և ի՞նչպես նստեցին Սուրիկի առաջարկով:

## Աշոտիկի որսը

Մոտակա գետից Աշոտիկը բռնել է մի մեծ ձուկ և հենց բնականից էլ նկարել, բայց թույլ է տվել մի մեծ սխալ: Ի՞նչն է սխալ այս նկարում:



**Ինչ թիվ է**

Ուսուցիչը մի թիվ ասաց: Աշակերտն այդ թիվը պետք է բաժաներ 4-ի, իսկ ստացած թվի վրա գումարեր 15: Բայց աշակերտն անուշադրության հետեվանքով իրեն տրված թիվը բազմապատկեց 4-ով, իսկ ստացած թվից հանեց 15: Չնայած կատարված սխալին, պատասխանը ճիշտ ստացվեց:

Ի՞նչ թիվ էր տվել ուսուցիչն աշակերտին:

**Փակ աչքերով**

Ի՞նչ կարելի է տեսնել փակ աչքերով:

## ԽԱՂԵՐ




Ծառին կամ սյունին մի մետր բարձրություն և 5—8 մետր երկարություն ունեցող մի պարան կապեցեք: Խաղացողներից մեկին արջ ընտրեցեք: Արջը բռնում է պարանի ծայրը և խաղը սկսված է համարվում:

Խաղացողները վազվզում են արջի շուրջը, աշխատում ձեռքով արջին խփել և փախչել: Արջը մի ձեռքով պարանի ծայրը բռնած ձգտում է պաշտպանվել հարվածներից և խփել հարվածողներին: Խփվողը դառնում է արջ: Խաղը շարունակվում է նույն ձևով: Արջը խաղացողներին կարող է խփել միայն այն դեպքում, երբ պարանի ծայրը գտնվում է իր ձեռքում:



Խաղացողները բաժանվում են երկու հավասար խմբի: Նրանք ծռծրակով շարվում են իրարից մեկական մետր հեռավորության վրա դրված սահմանագծին:

Խմբերի առաջին խաղացողներին տրվում է մեկական փայտ: Ամեն մի փայտի վրա փաթաթված է 15—25 մետր էլեկտրալար կամ բարակ պարան:

Խաղն սկսելու ազդանշան տրվելուն պես, շարքերի առաջին կանգնածները անմիջապես իրենց խմբի երկրորդ խաղացողներին են տալիս պարանի ծայրը, իսկ իրենք փայտի երկու ծայրերից բռնելով բացում են պարանի կեսը քանդելով արագ ետ-ետ գնալ: Կծիկը վերջանալուն պես, նույն արագությամբ փաթաթելով առաջ են գալիս և հանձնում երկրորդ խաղացողներին: Այսպես բոլորն էլ մասնակցում են խաղին: Այն խումբը, որը շուտ է վերջացնում խաղը շահում է մի միավոր: Հաղթում է այն խումբը, որը շահում է 4 միավոր:

Խաղը վարժեցնում է ճարպկության և արագաշարժության:

*ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

## ԽՆԴԻՐՆԵՐ

*Մի խումբ երեխաներ գնացքից իջնելով մի ծերունու հարցրին.*

*— Պապիկ, այստեղից մինչև ճամբարը որքա՞ն կլինի:*

*Կոլխոզնիկը պատասխանեց.*

*— Կայարանից դուրս կգաք, կանցնեք ճանապարհի ուղիղ կեսը, հետո կես կիլոմետր էլ կգնաք մինչև կամուրջը: Այնտեղից կթեքվեք դեպի աջ և կածանով կգնաք մեկ և կես կիլոմետր, կհասնեք անտառին: Վերջինիս կեսի չափով էլ կանցնեք անտառի միջով և կհասնեք ճամբար:*

*Երեխաները շարժվեցին ցույց տված ճանապարհով և սկսեցին հաշվել, թե որքան հեռու է ճամբարը կայարանից:*

*Դուք էլ որոշեցեք:*

---

*1. Ինչո՞ւ են մոդեսներն արևի տակ անվերջ շարժման մեջ:*

*2. Կարելի՞ է արդյոք թղթի մեջ ջուր եփել:*

*Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*

# ԲԱՌԱԽԱՂ

Տրված է վեց իրար շոշափող շրջագծեր, որոնք իրենց ներքին շոշափում են կենտրոնական շրջագիծը։ Շրջագծերից յուրաքանչյուրն ունի վեց փոքր շրջագիծ, իսկ բառերից յուրաքանչյուրը նույնպես բաղկացած է վեց տառից։




Սլաքի ուղղությամբ փորձեցեք բառերը շրջագծերում դասավորել այնպես, որ ստացվի՝ 1-ին շրջագծում,— կոմպոզիտոր Սպենդիարովի ստեղծագործություններից մեկը, 2-րդում՝ որևէ վայրում ապրող, 3-րդում՝ պետություն Եվրոպայում, 4-րդում՝ ձի, 5-րդում՝ ծովային կենդանի, 6-րդում՝ նավահանգիստ Չինաստանում, իսկ կենտրոնական շրջագծում ստացվի հայ վիպասանի անուն։

*Առաջարկ՝ Սիսիանի շրջանի Սիսիան գյուղի դըպրոցի աշակերտ Լիններ Պապիկյանի։*

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ի՞նչ թռչուն է երկարավիզ,
Բայց չի թռչում, ման է գալիս,
Նժույգից լավ վազել գիտի,
Բնակիչն է անապատի։

Իր տունը դալար,
Կոկոնն սպիտակ,

Դարձավ մեզ համար
Թել, շոր ու տետրակ։

Ո՞ր միջատն է ցատկում արագ,
Իր պոչի տակ վառած ճրագ։

Մ. ԿԻՐՑՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի նկարը՝ Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ




**„ПИОНЕР“**

№ 8

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, август, 1951 г. Ереван

*Խմբագրի պաշտոնակատար՝* Վ. ՏԱԼՅԱՆ

*Խմբագրական կոլեգիա՝* ՍԻՄԱԿ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Գ. ZԱԿՈԲՅԱՆ, Ս. ՕZԱՆՅԱՆ, Վ. ԱՆԱՆՅԱՆ, Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ, Գ. ՍԵՎՈՒՆՑ, Է. ՍԻՄՈՆՅԱՆ, Zr. ԲԱՏԻԿՅԱՆ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*
*ՎՖ 04109, Պատվեր 476. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ: Արտադրության է հանձնված 12/VII—51 թ.: Ստորագրված է տպագրության 13/VIII—51 թ.*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.:*

ԳԻՆԸ 2 Ռ.

# ԷՋՄԻԱԾՆԻ ՀԱՎԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԺԻՆԱՅՈՒՄ



Ստացվել է «Պիոներ կանչ»-ի հերթական համարը:



Վալյա Կոստանյանը հասկ հավաքելիս:



Զբոսանք լճի վրա.



Հանգստի ժամին.